

# ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

*Ս. ԽԱՐԱՋՅԱՆ*

*Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

Ես, Սուրիկը և Մոսին
Ողջ ամռանը, այս տարի,
Ապրում էինք միասին
Պապիկի մոտ իմ բարի:
Եվ պապիկս այգեպան
Մեզ պատմում էր ցնծագին,
Թե ինչպես է չոր, խոպան
Հողում գցել այս այգին.
Թե ինչպես է այնքան ծառ
Տնկել խորունկ մեր ձորում,
Եվ ինչքան է ջրով սառ
Ջրել ծառերն իր օրում:
Ուտում էինք մենք հասուն
Խնձորները քաղցր ու մեծ,
Նա ժպտում էր և ասում.
— Աշխատանքս է դրանց մեջ,
Աշխատանքով են սիրուն
Քաղաքները բարձրանում,
Եվ ամեն ինչ աշխարհում
Քրտինքով է քաղցրանում:




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հակոբ Հակոբյանի անվան դպրոց. 7-րդ «ա» դասարանի գերազանցիկ աշակերտուհիները պիոներական սենյակում Կոնստիտուցիայի դասը պատրաստելիս:

*Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

# ԳՐԻԳՈՐԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ընկեր Վարդանյանն ասաց.

— Երկրորդ օղակում կա մի գերազանցիկ՝ Գրիգորը, իսկ մյուսները, բացի մեկից, նույնիսկ «3» գնահատական չունեն։ Դա կարծես թե վատ չէ։ Բայց այդ մեկի՝ Սամվելի վատ գնահատականների պատճառով օղակի առաջադիմությունը ցածր է։

Տղաների հանդիմանական հայացքների տակ Սամվելը գլուխը կախ գցեց։ Ամբողջ ջոկատում «2» գնահատական ունեցող կար միայն երկրորդ օղակում։

Եվ այժմ Գրիգորը տուն գնալիս ճանապարհին մտածում է. «Ես ի՞նչ մեղավոր եմ, որ Սամվելը երկուսներ ունի։ Ես բոլոր առարկաներից հինգ ունեմ։ Էլ ինչո՞ւ է ընկեր Վարդանյանն ասում, թե օղակում «2» գնահատական ունեցողներ որ կան, իմ հինգերն արժեք չունեն»։

Այդ մտքերով տարված նա տուն հասավ։ Դեռ նոր էր ոտքը տան շեմքից ներս դրել, երբ փոքր քույրը՝ Սաթիկը, որն իրենից երկու դասարան ցածր՝ չորրորդում էր սովորում, ուրախ աղմուկով դիմավորեց նրան։



Գրիգորն սկսեց արագ-արագ ճաշել։

— Լավ հասար, Գրիգո՛ր ջան. արի ինձ օգնիր, դժվարանում եմ այս խնդիրը լուծել։

— Այն կողմ գնա, է,— բարկացած նրան կոպտեց Գրիգորը,— առանց այդ էլ, այսօր ջոկատի հավաքույթ ունեինք ու դեռ ոչ մի դաս չեմ պատրաստել։ Հիմա էլ՝ դու...

Ապա դառնալով խոհանոցի կողմը, բարձր ու հրամայական տոնով ասաց.

— Մամա՛, շո՛ւտ, ինձ բան տուր ուտելու։

— Գրիգո՛ր ջան,— լսվեց խոհանոցից մոր ձայնը,— ես Վանիկին եմ լողացնում. կա՛մ ինքդ ճաշը վերցրու, կամ մի քիչ սպասիր...

— Ես ինձ համար սեղա՞ն գցեմ, թե՞ դասերս պատրաստեմ,— բարկացած ճչաց Գրիգորը։

Ու խռոված քաշվեց սենյակի անկյունը, որտեղ գրասեղանն էր.— Չեմ ուզում ձեր ճաշը...

Նա բաց արեց ձեռքն ընկած դասագիրքն ու ձևացրեց, թե իբր պարապում է, բայց աչքի տակով բարկացած նայում էր Սաթիկին, որը մի պահ պարապմունքն ընդհատելով, եղբոր համար ճաշի սեղան էր պատրաստում։

— Մի՛ շտապիր, մամա՛ ջան,— քիչ հետո ասաց Սաթիկը,— դու քո գործն արա, ես Գրիգորին ճաշ տվեցի։

Գրիգորն սկսեց արագ-արագ ճաշել։ «Ի՞նձ ինչ, թե Սամվելը երկուս ունի։ Ես գերազանցիկ եմ. ես ոչ մի գործ չունեմ օղակի առաջադիմության հետ, դասարանում ես բոլորից լավ եմ սովորում»։ Իսկ քիչ հետո ճաշելը վերջացնելով, նա հենց այնպես, ամեն ինչ սեղանին թափած թողնելով, գնաց իր անկյունը՝ պարապելու։ Անցնելով թվաբանության խնդրի վրա չարչարվող քրոջ մոտից նա կարգադրեց.

— Ես ճաշը վերջացրի, սեղանը հավաքիր. չե՞ս տեսնում՝ մայրիկը զբաղված է, հայրիկն էլ շուտով կգա...

Նա գիտեր, որ երբ հայրիկը գա, թափթփված սեղանը տեսնելով պիտի հարցնի.

— Իսկ այս ո՞ր անշնորհքն է կերել ու ամեն ինչ թափած թողել...

Սաթիկի դեմքը դժգոհ արտահայտություն ընդունեց. բայց նա վեր կացավ եղբոր կարգադրությունը կատարելու։ Քիչ հետո սենյակ վազեց լողացած, կարմրած այտերով Վանիկը։

— Ես լողացա, ես մաքուր եմ,— ուրախ աղաղակեց նա տեսնելով քրոջն ու եղբորը։

— Սո՛ւս կաց, չե՞ս տեսնում՝ դաս եմ սովորում,— նրա վրա գոռաց Գրիգորը։

Վանիկը վախեցած սսկվեց ու մի կողմ քաշվեց։

***

Երկրորդ օղակի պիոներները դասերից հետո մնացին շատ կարևոր մի հարց լուծելու. ինչպե՞ս օգնեն Սամվելին։ Սամվելը «2» գնահատական ուներ աշխարհագրությունից և թվաբանությունից, իսկ հայոց լեզվի գրավորից, ճիշտ է, երեք ուներ, բայց այդ առարկայից էլ էր անհրաժեշտ նրան օգնել, որովհետև, ինչպես հայոց լեզվի դասատու ընկեր Մեհրաբյանն էր ասում, դա այնպիսի երեք էր, որ կաղում էր և երկուս դառնալու վտանգի տակ էր։ Սամվելը ծույլ չէր, բայց ճիշտ չէր պարապում։ Հարկավոր էր մի որոշ ժամանակ օգնել նրան, ուղղություն տալ։

— Հայոց լեզվից ես կօգնեմ,— հայտարարեց Մխիթարը։

— Իսկ ես՝ աշխարհագրությունից,— ասաց Աշոտը։

— Թվաբանությունից Գրիգորը կօգնի,— առաջարկեց օղակավար Վազգենը։

— Ե՞ս,— խոսեց Գրիգորը,— ես չեմ կարող, ես հազիվ իմ դասերը պատրաստեմ։

— Դո՞ւ, հազի՞վ,— մեջ ընկավ Մխիթարը,— դու բոլոր առարկաներից հինգ ունես։

— Հետո՞ ինչ։— Գրիգորը խեթ-թեթ նայեց նրան։— Միևնույն է, ես չեմ օգնի. ես գործ չունեմ Սամվելի երկուսի հետ։

Մխիթարը, որ տղաների մեջ ամենից տաքարյունն էր, այլևս չհամբերեց.

— Դու ինչո՞ւ ես քեզ բոլոր գործերից հեռու պահում։ Պատի թերթի խմբագիր ենք ընտրում, հրաժարվում ես, օղակավար՝ հրաժարվեցիր, բոլոր պիոներական հանձնարարություններից հրաժարվեցիր, Սամվելի հետ չես ուզում պարապել...

— Ես ժամանակ չունեմ,— փորձեց արդարանալ Գրիգորը։

— Տղանե՛ր,— ասաց Վազգենը,— ես թվաբանությունից չորս ունեմ, բայց կպարապեմ Սամվելի հետ։ Միևնույն է, եթե այսպես զոռով ստիպենք, Գրիգորի պարապելուց բան դուրս չի գա։

— Իսկ Գրիգորին կպատժենք մեր վերաբերմունքով,— վերջում եզրակացրին տղաները միասին։

«Ինչ ուզում եք արեք»,— ինքն իրեն մտածեց Գրիգորը և ընկերներից նեղացած տուն գնաց։

Վերջանում էր նոյեմբեր ամիսը։ Արդեն եղանակը ցուրտ էր։ Կաթնագույն երկնքից ձյան հաստ ու կենտ փաթիլներն էին ընկնում։ Տուն մտնելիս Գրիգորը տեսավ դռան առաջ փայտ ջարդող մորը և հարցրեց.

— Ճաշը պատրա՞ստ է...

— Պատրաստ է,— տնքոցով կացինը բարձրացնելով պատասխանեց մայրը։

Գրիգորը մտավ տուն։ Բայց նա հենց նոր էր գդալը բերանը տարել, երբ դրսում լսվեց հայրիկի ձայնը.

— Գրիգորը դպրոցից տուն չի՞ եկել...

— Եկել է։

— Իսկ ի՞նչ է անում։

— Ճաշում է...— լսվեց մոր պատասխանը։

— Ճաշո՞ւմ է, լավ,— ասաց հայրիկը,— ես փայտը կկոտրեմ, դու գնա։

Լսվում էր, թե ինչպիսի եռանդով է հայրը փայտ ջարդում։ Սաթիկը ջարդված փայտն էր ներս բերում։ Նույնիսկ փոքրիկ Վանիկը պարապ չէր։ Նա ուրախ աղմուկ-աղաղակով դուրս ու ներս էր անում և ամեն անգամ հետը մի փայտ էր բերում։ Գրիգորը շարունակում էր ճաշել, բայց ինչ-որ անհանգիստ էր։

Քիչ հետո փայտ կոտրելը վերջացավ. հայրիկը ներս եկավ և հայտարարեց.

— Գրիգորը ոչ ոքի, ոչ մի գործում օգնել չի ուզում։ Քանի որ այդպես է, ուրեմն մենք էլ չենք խնդրի երբեք, որ նա որևէ գործ անի, որևէ մեկին օգնի։

«Ավելի լավ»,— մտքում ինքն իրեն ասաց Գրիգորը։ Բայց նա զգում էր, որ հայրիկի որոշումից լավ հետևանք չի ստացվելու։

Զգում էր, բայց ինքն իրեն հանգստացնելու համար մտքում կրկնում էր՝ «Ավելի լավ»...

⁂

Երկրորդ օղակի պիոներները եռանդով գործի անցան։ Այժմ բոլորի ուշադրության կենտրոնում Սամվելն էր։ Օղակի ամեն մի անդամին Սամվելի յուրաքանչյուր գնահատականն այնպես էր հուզում, կարծես ինքը ստացած լիներ այդ։

Մի քանի օր հետո, Սամվելն առաջին անգամ թվաբանությունից երեք ստացավ։ Դասամիջոցին ամբողջ օղակը շրջապատեց Սամվելին.

— Տեսնո՞ւմ ես,— ասաց Մխիթարը,— իսկ դու կարծում էիր, թե թվաբանությունը քեզ չի հաջողվի...

— Հիմա Սամվելը պետք է երեքը ամրապնդի և չորսի ձգտի,— ոգևորված նկատեց Աշոտը։

«Ես հինգ ստացա, ոչ ոք ոչ մի խոսք ինձ չասաց, իսկ Սամվելի մի երեքի համար մի տես՝ ինչ հարայ-հրոց են բարձրացրել»,— մի կողմ քաշված մտածում էր վիրավորված Գրիգորը։



— Պատրաստ է,— տնֆոցով կացինը բարձրացնելով պատասխանեց մայրը:

Վիրավորանքն ավելի սուր զգաց նա, երբ տանը, թվաբանությունից նրա հինգ ստանալու մասին հայրը լսեց անտարբերությամբ, մինչդեռ գովասանական խոսքեր ասաց Սաթիկին, որը գեղեցիկ ու մաքուր էր կատարել ռուսաց լեզվի տնային առաջադրանքը։

— Սաթիկը տան գործերի մեջ էլ այդպես է,— միջամտեց մայրը։— Եթե Սաթիկն ինձ չօգներ, ես շատ կդժվարանայի...

Իսկ Գրիգորի հինգի մասին ամբողջ երեկոյի ընթացքում ոչ ոք ոչինչ չասաց։

«Այս ինչո՞ւ են բոլորը թշնամացել ինձ հետ,— մտածում էր նա։

Ամենից վատն այն էր, որ ոչ ոք ոչ մի գործում նրանից օգնություն այլևս չէր խնդրում։

Ծանր գույլերը ձեռքին անցնում էր մայրն

ու կարծես բոլորովին չէր էլ նկատում իրեն։ Սաթիկը ոչ մի անգամ ոչ մի հարցում չէր դիմում նրան։ Առաջներում էլ, երբ նրան դիմում էին, նա մեծ մասամբ հրաժարվում էր, բայց չէր պատկերացնում, թե ինչքա՜ն ծանր կլինի այսպիսի վիճակը։ Վատ էր այն, որ թե՛ դպրոցում, թե՛ տանը նա կարծես մենակ էր մնացել…

Այդ օրը քնելուց առաջ Գրիգորը բաց արեց օրագիրը, նայեց… Եվ առաջին անգամ «5» գնահատականը նրան չուրախացրեց։

***

Երկրորդ օղակի գործերը լավ էին գնում։ Սամվելը շուտով ուղղեց իր երկուսները։ Մյուսներն էլ հաջողություններ էին ունենում և ամեն մի հաջողություն ցնծություն էր առաջացնում բոլորի մեջ։ Միայն Գրիգորն էր, որ այդ ընդհանուր ոգևորությանը մասնակից չէր լինում։ Բայց մի դեպք օղակին դժվարին կացության մեջ դրեց։

Աշոտը, որ Սամվելին օգնում էր աշխարհագրությունից, հիվանդացավ։ Անհրաժեշտ էր Սամվելին օգնել, որպեսզի նա էլ ետ չըմնար և Աշոտին օգնել, որպեսզի հիվանդությունը չանդրադառնար նրա առաջադիմության վրա։ Բացի այդ, շուտով պետք էր լույս ընծայել պատի թերթի նոր համարը։ Ի՞նչ պիտի անեին առանց Աշոտի. դասարանում լավ նկարել գիտեին միայն նա ու Գրիգորը. իսկ Գրիգորի օգնությանը դիմել ոչ ոքի մտքից չէր էլ անցնում։

Չորրորդ օղակի պիոներ Հրաչիկը հենց Աշոտի հիվանդանալու օրը, դասամիջոցին Վազգենին ասաց.

— Ես Աշոտին մոտիկ եմ ապրում, ամեն օր դասերից հետո կգնամ, նրան կօգնեմ. բայց, ա՛յ, պատի թերթի գործը դժվար է։

Ջոկատավար ընկեր Վարդանյանը, որը դասամիջոցին եկել էր ու իմացել տղաների դժվարին վիճակը, ասաց.

— Այդպես չի կարելի, տղանե՛ր։ Եթե միայն Հրաչիկը զբաղվի Աշոտով, կդժվարանա ու ինքն էլ ետ կմնա։ Անհրաժեշտ է դասարանի մի քանի ուժեղների ընտրել, որպեսզի հերթով այցելեն և օգնեն ընկերոջը։

Դա, իհարկե, ճիշտ էր։ Շուտով ցուցակը կազմվեց։ Գրիգորն այդ ցուցակում չկար։

***

«Մենակ մարդը, կոլեկտիվից կտրված մարդը,— ասել էր Գրիգորին հայրը,— ոչ միայն դժվարություններ չի կարողանա հաղթահարել, այլև սրտանց ուրախանալ էլ չի կարող»։

Եվ հիմա Գրիգորը տեսնում էր, որ հայրը ճիշտ էր ասում։ Իր լավ գնահատականները, որոնք ոչ ոքի ուշադրության չէին արժանանում, իրեն էլ այլևս առաջվա չափ չէին ուրախացնում։

Ահա նա նստել է, որ պարապի. Թվաբանության խնդիրն արտագրել է, բայց ոչ մի կերպ չի կարողանում կենտրոնանալ, որ լուծի։

Ինչքան են միմյանց հետ կապված օղակի, ամբողջ դասարանի տղաները… Ինչպե՜ս էին Սամվելի երեքով ուրախացել։ Այժմ Գրիգորը նույնիսկ Սամվելին էր նախանձում։ Իսկ ինքը ինչո՞վ է ուրախանում, ինչո՞վ է ապրում…

Մտքերը նորից ու նորից խառնվում են Գրիգորի ուղեղում։ Եվ նա նորից չի կարողանում կենտրոնանալ թվաբանության խնդրի վրա։

Գրիգորն այդ օրը առաջին անգամ պառկեց քնելու առանց օրվա դասերը պատրաստելու։ Պառկեց քնելու, բայց երկար ժամանակ անհանգիստ շուռումուռ էր գալիս տեղում. քունը չէր տանում։

***

— Տղանե՛ր,— դասերից առաջ հայտարարեց Հրաչիկը,— Աշոտի մոտ եղա. նա ասաց, որ չնայած հիվանդ է, բայց մի կերպ կկարողանա պատի թերթը նկարել։ Նա խնդրեց, որ Սամվելի հետ աշխարհագրությունից անպայման որևէ մեկը շարունակի պարապել. չէ՞ որ Սամվելը աշխարհագրությունից ավելի շատ է դժվարանում։

Մինչ պիոներները աշխույժ վիճաբանում



Քունը չէր տանում։

ու մտքեր էին փոխանակում Հրաչիկի հայտարարության շուրջը, երկու հոգի գլխիկոր լռում էին։ Դրանք Սամվելն ու Գրիգորն էին։ Վերջապես Սամվելն ասաց.

— Տղանե՛ր, դուք ինձանով էլ մի՛ զբաղվեք... ես ավելի շատ կպարապեմ, ես դասերին ավելի ուշադիր կհետևեմ։ Ա՛յ, կտեսնեք, որ ինքս կհասցնեմ։ Միայն թե Աշոտն ինչպե՞ս կնկարի պատի թերթը... հիվանդ է, չէ՞...

Տղաները լռեցին. մտածում էին Սամվելի առաջարկության մասին։ Այդ ժամանակ մեջ մտավ Գրիգորը։

— Պատի թերթը ես կնկարեմ,— բոլորի համար անսպասելի հայտարարեց նա,— աշխարհագրությունից էլ ես կպարապեմ Աշոտի հետ։

Բոլորը զարմացած նրան նայեցին։ Նայեցին այնպես, կարծես առաջին անգամ էին տեսնում, որ դասարանում այդպիսի աշակերտ կա։ Մխիթարն ուրախացած բացականչեց։

— Ճի՞շտ է։

Իսկ Վազգենը կանգնելով դասարանի մեջտեղն ասաց.

— Գիտե՞ք ինչ. մենք ստիպված ենք Գրիգորի առաջարկը չընդունել, որովհետև նա առանց այն էլ չի հասցնում... Նա նույնիսկ տանը իր մայրիկին ոչ մի գործում չի օգնում. ասում է. «Ժամանակ չունեմ»... Նա չի կարող...

Աղմուկ բարձրացավ։ Բոլորը ցանկանում էին խոսել, բոլորը վիճում էին։

Թե ինչով վերջացավ այդ ամենը, պատմելն ավելորդ է։ Միայն թե Գրիգորն այդ օրը մայրիկին էլ օգնեց, Սաթիկին էլ. պարապեց նաև Սամվելի հետ ու իր դասերն էլ պատրաստեց... Որքա՜ն հետաքրքիր և ուրախ անցավ այդ օրը։ Նա արդեն մտածում էր, որ վաղը կսկսի նկարել պատի թերթը։ Իսկ ժամանա՞կը... Ժամանակը լրիվ բավական էր...



# ՑՈՒՐՏ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ՛Ն

*Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Մ. ՄՈՍՈՅԱՆԻ*

Սաքոն շքամուտքից դուրս եկավ թե չէ, զգաց, որ սարսափելի ցուրտ է։ Հենց այդ պահին էլ նա լսեց երրորդ հարկից հնչող մոր ձայնը։

— Սաքո՜...

Սաքոն գիտեր, թե ինչ է ուզում մայրը։ Այդ էր պակաս, դեռ ձյուն չկա՝ վերարկու հագիր։ Նա քայլերն արագացրեց։

— Սաքո՜,— նորից լսվեց մոր ձայնը։

«Դպրոց չգա՞»,— տագնապով մտածեց նա և պահվեց մոտակա տան պատի հետևում։

Լավ էր, որ օրվա այդ ժամին փողոցում շատ մարդ կար և մայրն իրեն չնկատեց։ Մի փոքր սպասելուց հետո, նա գլուխը պատի հետևից հանեց և նայեց տան կողմը։ Շքամուտքի մոտ վերարկուն ձեռքին, տնային խալաթով կանգնած էր մայրը։ «Ընը՜, լավ է,— մտածեց նա,— որ խալաթով է՝ հեռու չի գնա»։ Եվ իսկապես մայրը մի անգամ էլ «Սաքո» կանչեց և աստիճաններով բարձրացավ վեր։

Սաքոն կողքի նրբանցքով դուրս եկավ զուգահեռ փողոցը։ Այստեղ նա նորից ցուրտ զգաց, բայց աշխատում էր ինքն իրեն համոզել, որ չի մրսում, որ այնքան էլ ցուրտ չի։ Բայց սառը քամին վնգալով խփում էր նրա դեմքին, պայուսակը բռնած բաց ձեռքին։ «Գոնե ձեռնոցներս վերցնեի»,— մտածեց նա. բայց իսկույն իրենից հեռու վանեց այդ միտքը։ Հետո նկատեց, որ ամբողջովին կուչ է եկել։ Շուրջը նայեց և անմիջապես ձգվեց, կուրծքը դուրս գցեց և աշխատելով որքան կարելի է բնական տեսք ստանալ, շարունակեց ճանապարհը։ «Մի՞թե սա ցուրտ է,— մտածում էր նա,— սպորտսմենները ցրտից չեն վախենում, նրանք կոփում են իրենց»։

Սաքոն հիշեց նշանավոր մարմնամարզիկ Հրայր Շահվերդյանին, որին հաճախ էր հանդիպում իրենց փողոցում։ Դեռ մի երկու օր առաջ Շահվերդյանը թեթև սպորտային հագուստով էր շրջում։ Ճիշտ է, ինքը դեռ հեռու է նրան հասնելուց, բայց էլի չեմպիոն է, թեկուզ դպրոցի մասշտաբով։ «Ինչո՞ւ պիտի հիմիկվանից վերարկու հագնեմ,— մտածում էր նա,— դեռ դեկտեմբերի սկիզբն է և ձյուն էլ չկա։

Իսկապես, ինչո՞ւ ձյուն չկա։ Ինչպե՞ս պիտի անցկացվեն դահուկային մրցումները, որ դրուժինայի խորհրդի պլանով նախատեսնված են նոր տարվա նախօրյակին»։

Սաքոն քայլերն ավելի արագացրեց։ Նա ուզում էր շուտ տեսնել Արամին։

— Օհո՛, չեմպիոնն այսօր էլ վերարկու չի հագել։

Սաքոն շուռ եկավ։ Կողքի փողոցից դուրս եկան Արմենն ու Լևոնը։

— Այդ ի՞նչ ես անում,— շարունակեց Լևոնը,— կմրսես։

— Ինչո՞ւ պիտի մրսի,— ծաղրեց Արմենը, որի բամբակուն վերարկուի մորթե օձիքի մեջ թաղված այտերը կաս-կարմիր էին կտրել։— Այդ էր պակաս, որ սպորտսմենը մրսի, նրանք գիպսից են շինված։

Սաքուն ուզում էր պատասխանել նրան, բայց նկատելով դպրոցին մոտեցող Արամին, վազեց նրան ընդառաջ։

— Սաքո՛, Սաքո՛, մեզ մոտ արի,— հետևից հնչեց Արմենի ծաղրական ձայնը։

Արամի հայրն աշխատում էր օդերևութաբանական կայանում։ Դասարանում նա ամեն օր տեղեկություն էր տալիս մի քանի օրվա եղանակի մասին։ Ջոկատի աշխատանքի պլանը կազմելիս, միշտ նրանից էին տեղեկություն վերցնում։ Կարելի՞ է այսինչ օրը էքսկուրսիա կազմակերպել, այնինչ օրը ֆուտբոլի մրցում անցկացնել։

Նկատելով իր կողմը վազող Սաքոյին, Արամը դեռ հեռվից գլուխը բացասաբար շարժեց։ Այդ նշանակում էր, որ ձյուն գալու մասին դեռ խոսք չի կարող լինել։

— Այո՛, չոր սառնամանիքներ են սպասվում,— ասաց նա, երբ նրանք մոտեցան իրար։

Սաքոյի մարմնով մի դող անցավ և ոտից-գլուխ ցնցեց նրան։ Նա վազեց դպրոց։

— Սաքո՛, Սաքո՛, մեզ մոտ արի,— նորից լսվեց Արմենի ձայնը։

Դասարանում հաճելի տաք էր: Չնայած դրան, Սաքոն շատ էր ուզում մոտենալ ջեռուցման մարտկոցին, գոնե ձեռքերը տաքացներ: Բայց նա այդպիսի բան չէր անի:



— Սաքո՛,— նորից լսվեց մոր ձայնը:

Այդ էր պակաս. պիտի ասեին, թե մրսել է: Բացի այդ՝ տղաները շրջապատեցին նրան:

— Հը՛, Սաքո՛, ի՞նչ է ասում Արամը:

Նա ձեռքը թափ տվեց և նստեց տեղը: Արամը ներս մտավ: Բոլորը նրա դեմքից հասկացան, որ դեռ ձյուն չի գալու:

Յոթերորդ «ա» դասարանի տղաները երկու տարի իրար հետևից դահուկային մրցումներում առաջին տեղն էին գրավում, իսկ Սաքոն դպրոցի չեմպիոնն էր: Բայց յոթերորդ «ա»-ն այս տարի լրջորեն անհանգստացած էր: «Բ»-ում երկու նոր աշակերտ էին ավելացել, երկվորյակ եղբայրներ, որ Լենինականից էին եկել: Ասում էին, թե նրանք շատ լավ դահուկավորներ են: «Բ»-ի տղաները հաճախ էին սպառնում. «Դեռ սպասեցե՜ք, այս տարի էլ կտեսնենք»:

Սաքոյին ամենից ավելի անհանգստացնում էր այն, որ Ապրեսյան եղբայրներն իրենք այդ մասին ոչինչ չէին ասում: Այդ լռության մեջ նա ինչ-որ չարագուշակ բան էր տեսնում:

Երկար կտևեր վեճը առաջիկա մրցումների մասին, եթե զանգը չհնչեր:

Երբ Սաքոն դասերից հետո ուսուցչանոց մտավ, ընկեր Հայկուհին գրասեղանի մոտ նստած ինչ-որ նշումներ էր անում մատյանում: Սաքոյին տեսնելով նա ցույց տվեց բազմոցն ու ասաց.

— Նստի՛ր, հիմա կվերջացնեմ:

Բազմոցին նստած՝ Սաքոն սկսեց վերհիշել, թե վերջին օրերին ինչ է արել:

Մի ժամանակ նա ետ էր մնում հանրահաշվից. դա առաջին քառորդում էր: Հիմա ամեն ինչ կարգին է: Աչքի ընկնող չարություն նույնպես չի արել. էլ ինչո՞ւ է դասարանի ղեկավարը կանչել:

Հայկուհի Բագրատյանը վերջացրեց իր գործը, դասամատյանը դրեց պահարանը և տեղից վեր կենալով, մոտեցավ կախարանին: Սաքոյին թվաց, թե ուսուցչուհին մոռացել է իր մասին: Չէ՞ որ բան պիտի ասեր: Ակամա սկսեց հետևել ուսուցչուհուն, որը վերարկուն էր հագնում: Հանկարծ նա զարմանքից վեր թռավ և ակնապիշ նայեց կախարանին: Կեռից կախված էր իր վերարկուն:

Ուսուցչուհին հանգիստ կանգնած կոճկում էր վերարկուի գոտին և կարծես բոլորովին ուշադրություն չէր դարձնում նրա վրա:

Սաքոն ոտքերի թաթերի վրա մոտեցավ կախարանին: Տարակույս չկար՝ այդ նրա վերարկուն էր: Նա իսկույն ճանաչեց արհեստական մորթուց պատրաստած շագանակագույն օձիքը: Սաքոն մնացել էր անշարժ կանգնած և դեռ չէր հավատում իր աչքերին:

— Ինչո՞ւ ես կանգնել, հագիր գնանք,— ասաց Հայկուհի Բագրատյանը մի այնպիսի տոնով, ասես ոչինչ չէր պատահել:

Գրքերը մի կողմ դնելով, Սաքոն արագ հագնվեց: Վերարկուից նավթալինի հոտ էր գալիս:

Արդեն ժամը երեքն էր, բայց ցուրտը դեռ չէր անցել: Քամին առաջվա նման երես էր կտրում: Ընկեր Հայկուհին փողոցում խստորեն ասաց.

— Կոճկի՛ր, Սաքո՛, չէ՞ որ ցուրտ է:

— Ես չեմ մրսում,— փնթփնթաց Սաքոն, բայց առաջին երկու կոճակներն այնուամենայնիվ կոճկեց:

Մինչև խաչմերուկը նրանք լուռ էին: Սաքոն սիրտ չէր անում հարցնել, թե ինչ պիտի ասի դասարանի ղեկավարը, իսկ դասարանի ղեկավարը կարծես մոռացել էր նրան:

Խաչմերուկում նրանք պիտի բաժանվեին: Հենց այստեղ էլ նրանց առաջ դուրս եկավ Հրայր Շահվերդյանը. նա, որը եղել էր Պրագայի և Բուխարեստի ֆեստիվալներում, որին մեր ամբողջ Միությունն էր ճանաչում:

Հայկուհի Բագրատյանին տեսնելով նա կանգ առավ և ջերմորեն բարևեց նրան:

Շահվերդյանը վերարկու էր հագել, վզին շարֆ փաթաթել: Նախկին ուսուցչուհուն բարևելուց հետո նա անմիջապես հագավ իր կաշվե ձեռնոցը:

— Ցո՞ւրտ է,— հարցրեց Բագրատյանը:

— Ցուրտ է,— հաստատեց Շահվերդյանը և դառնալով դեպի Սաքոն, ասաց.— օձիքդ կոճկիր, հերո՛ս, կմրսես:

— Սաքոն սպորտսմեն է ուզում դառնալ, նա կոփում է իրեն,— ասաց Բագրատյանը.— մի՞թե սա ցուրտ է սպորտսմենի համար:

Ցրտից արդեն կարմրատակած Սաքոյի դեմքն ավելի կարմրեց: Նա հասկացավ ուսուցչուհու ակնարկը: Իսկ Հրայր Շահվերդյանը, որ նույնպես ամեն ինչ հասկացել էր, ասաց.

— Ցուրտ է, ընկե՛ր Բագրատյան, ցո՛ւրտ է: Գիտե՞ք, այսօր մինուս 17 աստիճան է: Սպորտսմենները նույնպես կմրսեն, եթե կոփված չլինեն, իսկ օրգանիզմը կոփում են աստիճանաբար, ամենօրյա վարժությամբ:



Շահվերդյանը վերարկու էր հագել:

Հետո նա ավելացրեց.

— Նույնիսկ լավ կոփված սպորտսմենը կարող է մրսել, եթե ձմռանը մերկ ման գա:

Եվ ժպտալով հեռացավ: Խաչմերուկում մնացին ուսուցչուհին և Սաքոն:

— Իսկ վերարկուի համար, Սաքո՛, ներողություն խնդրիր մայրիկից, հասկացա՞ր,— ասաց դասարանի ղեկավարը և գնաց:

Սաքոն նույնպես տուն գնաց: Քամին վնգալով խփում էր նրա դեմքին: Նա բարձրացրեց վերարկուի լայն օձիքը:



# ԲԵՌՆԱԿԻՐԸ

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ
(63-րդ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Գնացքը կանգ առավ Կահիրեի կայարանում։ Երևացին բեռնակիրները, որոնք մինչ այդ չէին նկատվում։ Նրանց մեջ էր նաև Ալին։ Նա երկարահասակ, փոքր ինչ կորացած մարմնով մի ալեհեր ծերունի էր։ Ցնցոտիների արանքից երևում էին նրա կողերը։

Նրա շուրջը շուտով դիզվեցին բեռների կույտեր։ Նա նայում էր դրանց և ուրախանում։ Բայց բեռնակիրները արագությամբ ավլեցին այդ բլուրները։ Ալիի դեմ բացվեց նույն դատարկ հրապարակը...

Ինչպիսի՜ արիությամբ էր նա աշխատել իր երիտասարդ օրերին։

Նա թեթևությամբ շալակել էր մի քանի ճամպրուկ միանգամից։ Բոլորը հիացել էին և նախանձել նրան։ Ամեն մի հաճախորդից երկու շիլլինգ... Իսկապես որ նախանձելի էր։

...Կայարանում սովորական աշխուժություն էր տիրում։ Ամեն մարդ գործի վրա էր, շարժվում էր ինչպես լարված խաղալիք։

Միայն Ալին էր, որ կանգնել էր արձանի պես, իր երկար և ոսկրոտ մատներով բռնած ուսից կախված հաստ պարանը։ Հնում ուժով լի այդ ձեռքերն այժմ անգործ էին։ Նրանք միայն աննպատակ բռնել էին հաստ պարանը։

... Անցան մուրացկաններ։ Նրանց նայելիս Ալին ինչ-որ բան մտածեց, բայց սարսափեց։ Ոչ, ոչ, նա չէր ընկնի դրանց շարքերը։



Ալիի ուժերն սպառվում էին:

Մոտիկից ինչ-որ մանկական ձայն լսվեց․

— Հայրի՛կ, ահա բեռնակիր։

Հայրը նայեց, բայց անտարբերությամբ թափահարեց ձեռքն ու դարձյալ շարունակեց որոնումը։

— Հայրի՛կ, ահա բեռնակիր։

Հայրը բարկացավ։

— Ժա՛ն, քանի անգամ եմ պատվիրել, որ գործերիս չխառնվես։ Նա ծեր է, հասկանո՞ւմ ես, ծեր։

Ալին լսեց այդ։ Նա հեռացավ այդտեղից, կարծես անհարմար զգալով, որ ինքը «ծեր է», իսկ փոքրիկի սրտում խղճահարություն առաջացավ դեպի այդ ծեր մարդը։ Բայց տղան հիշելով գրպանի շոկոլադը, անմիջապես մոռացավ այդ և վազեց հոր հետևից։

Ալին գնաց կանգնեց բուֆետի մոտ։ Տարմ ֆուլի[1]) հոտ էր գալիս։ Նա գիտեր, որ ոչ մի միլլիմ[2]) չուներ, բայց այնուամենայնիվ քրքրեց գրպանները։ Ի՞նչ եռանդով նա բեռ կկրեր այդ րոպեին... վստահ էր, որ ֆուլը ուժ ու եռանդ կտար։ Նա ուզում էր գոռալ. «Տվեք ինձ ամենամեծ բեռը», սակայն չգիտես ինչու, լեզուն չէր դառնում։ Բայց ինչ ուրախություն... մեկը կանչեց նրան.

— Վերցրու այս ճամպրուկները։ Միայն զգույշ։

Այդ մարդու պահանջը նորից հիշեցրեց, որ նա ծեր է և զգույշ պետք է լինի։

Սկզբում նա մտածեց, թե ինչպես շիլլինգը պիտի փայլի իր ձեռքում և նա պիտի դրամը հանձնի խանութպանին։ Շուտով

1) Ֆուլ—լոբազգի բույս։

2) Միլլիմ—մանր դրամ։

հոգնեց։ Նա ճգնում էր պահել ձախ ձեռքում գտնվող ճամպրուկը, որը ցավեցնում էր ձեռքը, բայց լավ աշխատող երևալու համար չէր ցանկանում գետնին դնել կամ փոխել։

— Ինձ արդեն ջղայնացրին այս դողդոջի քայլերը,— ասաց տղամարդը, իսկ նրա կինը որպես համաձայնության նշան շարժեց իր ճարպոտ գլուխը։

Ալիի ուժերն սպառվում էին. կայարանից դուրս գալու համար դեռ բավական տարածություն կար։ Նա մոռացավ և՛ ֆուլը, և՛ խոհերը։

Ճամպրուկների ծանրությունը կարծես նրան ձգում էր դեպի փոշոտ հատակը։ Նրա կողքով անցավ մի բեռնակիր, որը և՛ բեռ էր տանում, և՛ կատակում ընկերոջ հետ։ «Սրա ուժը ունենայի»,— մտածեց Ալին։ Իսկ անիծված ճամպրուկներն ամեն րոպե ավելի էին ծանրանում և դառնում անտանելի։ Ալիին թվում էր, թե հարյուրավոր կիլոմետր ճանապարհ պիտի գնար։ Որքան նա հուսահատվում էր, կարծես այնքան էլ բեռն էր ծանրանում։ Նրան թվում էր, թե ուր որ է ձեռքերը պիտի անջատվեին մարմնից։

Չնայած երեկոյան զով քամուն, նրա դեմքը ծածկվում էր քրտինքով։ Նա ոչ թե քայլում էր, այլ քարշ գալիս, իսկ առջևից հաստատ և ամուր քայլերով գնում էին տերերը։ Ալին մի պահ ուզեց թողնել բեռը, հեռանալ։ Բայց շիլլինգը... Ոչ, նա պետք է գնար, ճիգ գործադրեր։ Նա սկսեց պատկերացնել, թե ինչպես ընտանիքն այդ օրը պետք է կուշտ ճաշեր, իսկ փոքրիկ Ահմեդը պիտի հավաքեր հացի փշրանքները և վազեր խեղճ ու սոված կատվի մոտ։ Երևի մտքերը նրան շատ հեռու կտանեին, եթե չզգար, որ սայթաքելու է։

Նա գերագույն ճիգ գործադրեց զգաստ մնալու համար։ Այս անգամ էլ նրան հաջողվեց փշրել խոչընդոտը։

Վերջապես երևաց կառապանի ծաղկատար դեմքը։ Ալին չհավատաց աչքերին, բայց զգաց, որ ինքը կանգնած է իրականության առջև։ Նրա տխուր դեմքին մի ժպիտ փայլեց. այդ ժպիտն էլ տանջված էր, ինչպես ինքը։ Նրա սիրտը շատ դանդաղ էր աշխատում, նա դժվար էր շնչում։ Կոկորդում կարծես ինչ-որ բան վանում էր օդը։

Քիչ, մի քիչ էր մնացել, որ նա ազատվեր իրեն տզրուկի նման կպած թշնամուց։ Նա հավաքեց իր վերջին ուժերը, սակայն երջանիկ րոպեն դեռ հեռու էր։ Նրան թվում էր, թե լսում է իր ոսկորների ճռճռոցը, որոնք կարծես փշրվում են. Նրա բազուկի երակները պայթելու աստիճան ուռել էին։

Նրա գլուխը պտտվեց, կարծես ինչ-որ անտեսանելի մի բան ցնցեց նրան։ Տերերը, որոնք մինչ այդ շարունակում էին հանդարտ քայլել, հանկարծ լսեցին մի ուժեղ թրմփոց, ետ նայեցին։ Ճամպրուկներն ընկել էին, իսկ դրանց կողքին տարածվել էր բեռնակրի անշունչ դիակը։ Քրտինքը սառել էր նրա ճակատին, իսկ ձեռքը դեռ համառորեն սեղմված էր ճամպրուկին։ Կինը մոտեցավ դիակին, նայեց շուրջը, կարծես ճամպրուկների մեջ ինչ-որ բան էր փնտրում։ Հանկարծ նա գոչեց.

— Վա՜յ, Հենրի՛, չլինի՞ թե այն գեղեցիկ սրվակս կոտրվեց։ Մեծ ճամպրուկի մեջն էի դրել...



# ՆՎԻՐԱԿԱՆ ԽՈՍՔԵՐ

Զ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Մեկ ժամ չէր անցել, երբ բոլորն արդեն գիտեին, որ նոր, հզոր կազմվածքով երիտասարդ ուղևորը Իգոր Նիկոլաևիչ Սևերովն էր։ Նա Կամչատկայից էր վերադառնում, որտեղ վերջերս հրաբուխ էր ժայթքել։

— Իսկ հրաբուխը սարսափելի՞ է, դուք վախենո՞ւմ եք,— հարցնում էր պիոներ Նիկիտ Ստեբլենկոն և առանց հիացմունքը թաքցնելու զննում էր երկրաբանի կրծքի ոսկե մեդալը։ Հետո տղան անսպասելիորեն ու հրճվանքով ասաց.



— Դուք հնդկացիների մոտ եք գնում ոսկու, թե՞ փղոսկրի համար...

— Ես էլ եմ ուզում երկրաբան դառնալ.

— Դե, իհա՜րկե, հենց դու էիր պակաս,— հանկարծ խոսեց Նիկիտի տասնվեցամյա քույրը՝ Լեսյան.— դու ավելի լավ է պատմիր, թե ինչպես էիր կուպրով քեզ բեղ ու մորուք նկարել և հետո ինչպես մի ամբողջ շաբաթ ես չէիր կարողանում մաքրել։ Մի՞թե դուք էլ եք այդպիսի տղա եղել,— հարցրեց Լեսյան երկրաբանին։

Երիտասարդը Լեսյային նայելով հարցրեց.

— Իսկ դուք իմ մասին վատ չե՞ք մտածի։

— Չէ, ինչո՞ւ...— շփոթվեց Լեսյան։

— Ուրեմն լսեցեք, թե ինչպիսին եմ եղել ես,— աշխուժանալով խոսեց նա։— Ես տասը տարեկան էի։ Սովորում էի երրորդ դասարանում և խելացնորության աստիճան կարդում էի արկածային գրքեր։ Իմ դասարանցիները անունս դրել էին «Բազեի ճիրան»։ Եվ շատ շուտով ես հավատացի, որ ես՝ ես չեմ, այլ անհաղթելի ու քաջարի ցեղի առաջնորդ եմ, անվախ հետախույզ։ Ամեն ինչ լավ կլիներ, եթե մի անգամ դասարանի ավագ ընտրելիս... Իհարկե, բոլոր «դալկադեմ եղբայրները» միաձայն բղավեցին, որ հարկավոր է ինձ ընտրել. իսկ մեր ջոկատավար Կոստյան հայտարարեց՝

— Իգոր Սևերովը չի համապատասխանում. առաջինը՝ նա քերականություն չի սիրում. թվաբանությունից կաղում է։ Բացի այդ երեկ նա կազմակերպել էր «վերելք» դեպի դպրոցի ձեղնահարկը և վեց տղա դասից ուշացել էին։

Ուրիշ խոսքով՝ ինձ չընտրեցին։ Այդ պատճառով ես իմ հավատարիմ ընկեր երկարատ, գանգրահեր Վասյա Տորոպովի հետ որոշեցի փախչել իսկական հնդկացիների մոտ։ Եվ այսպես, նշանակեցինք ժամանակը՝ հետևյալ առավոտ տնից փախչել։

Առավոտյան ես մայրիկիս ասացի, որ գլուխս և փորս ցավում են։ Մայրս անհանգստացավ և թույլ չտվեց ինձ անկողնից վեր կենալ։ Իսկ ճիշտ ժամը տասնվեցին մեկը զանգահարեց դռան զանգակը։ Ես լըսեցի, թե ինչպես մայրս հարցրեց Վասյա Տորոպովին.

— Դու ինչո՞ւ դպրոցում չես, Վասյո՛կ... Իսկ ինչո՞ւ ես այդ պարկը հարդ լցրել։

— Մենք... դե՜, մենք պատրաստվել ենք ամբողջ դասարանով էքսկուրսիայի գնալ,— հաջող ստեց «Արծվի կտուցը»,— ուզում ենք Ելագինյան կղզին գնալ։ Ես տեսա, որ Իգորը չկար՝ եկա...

— Ոչ, դու, բարեկա՛մս, ավելի լավ է Իգորի մոտ մի՛ գնա, հանկարծ կարող է վարակիչ լինել,— մտահոգված ասաց մայրս։

«Ի՞նչ անեմ. ինչպե՞ս հասկացնեմ «Արծվի կտուցին», որ նրա առաջնորդը թակարդում է։

Լսում եմ ինչպես «Արծվի կտուցն» սկսեց հապճեպորեն հրաժեշտ տալ ասելով՝

— Ես կկանգնեմ ձեր տան մոտ։ Շուտով մեր տղաներն այստեղով պիտի անցնեն, կմիանամ նրանց։

Մտնելով իմ սենյակը, մայրս «քնքշությամբ» ասաց.

— Ես վազեմ պոլիկլինիկա, տղա՛ս, բժիշկ կանչեմ։

Ես այնքան ամաչեցի, որ նույնիսկ վերմակը քաշեցի գլխիս։ Բայց բարեկամության պարտականությունն ինձ կանչում էր։ Չէ՞ որ «Արծվի կտուցը» փողոցում ինձ սպասում էր։ Դեռ մորս քայլերի ձայնը չէր խլացել, որ ես վեր թռա ու հագնվեցի։ Հորս գրասեղանից վերցրի մեծ խոշորացույցն ու մկրատը և խոթեցի գրպանս։ Խոհանոցում ես հորս որսորդական պայուսակի մեջ դրեցի պղնձե թեյնիկն ու մի քանի վայրկյան մտածմունքի մեջ կանգնեցի՝ «Վերցնե՞լ հորս հրացանի դատարկ պատյանը, թե՞ չվերցնել։ Այնուամենայնիվ որոշեցի չվերցնել։ Չէ՞ որ Միկլուխո-Մակլայը առանց զենքի գնաց պապուասների մոտ. իսկ ինչո՞ւ ես պիտի զենքի դատարկ պատյանը վերցնեմ»։ Դրա համար էլ վերցրի խոհանոցի սուր դանակն ու խրեցի գոտուս տակ, շտապով վրաս քաշեցի ձմեռային վերարկուս, չնայած արդեն ապրիլ ամիսն էր, հագա կրկնակոշիկներս ու դուրս վազեցի։

— Իսկ հետո ուղղակի հնդիկների մո՞տ, — անհամբերությամբ հարցրեց Նիկիտը։

— Օ, ո՛չ։ Դուք գիտե՞ք ում հետ բախտ ունեցանք հանդիպելու նավահանգստում։

— Ո՞ւմ հետ,— վրա տվեց Նիկիտը։

— Սկզբում մի խիստ, անդրդվելի, լռակյաց բոցմանի։ Սաժենաչափ հսկան կարծես գետնի տակից հայտնվեց, երբ մենք արդեն բեռնավորվող առևտրական նավի սանդուղքին էինք հասել։ Առանց մի խոսք արտասանելու, նա բռնեց մեր վզակոթերից, ինչպես կատվի ձագերի և համարյա թե ձեռքերի վրա տարավ մինչև նավահանգստի դարբասները, որոնցից մենք այնպիսի՜ դժվարությամբ էինք անցել բեռնատար մեքենայի հետևին կպած։

Եվ ահա մենք, ամոթահար, հուսաբեկ քայլում ենք բոցմանի հսկողության տակ։ Դիմացից գալիս էին մի խումբ բանվորներ։ Նրանց տեսնելով, չգիտես թե ինչու, բոցմանը կանգ առավ և, ինչպես ինձ թվաց, վարանեց։ Նա նույնիսկ մեր օձիքները բաց թողեց։

— Իսկ դուք ինչո՞ւ դպրոց չեք գնացել, տղանե՛ր։

Բանվորների խմբից բաժանվեց ու մեզ մոտեցավ ազդու և ուրախ աչքերով մի մարդ։ Ես տեղումս չորացա, որովհետև անմիջապես ճանաչեցի Սերգեյ Միրոնովիչ Կիրովին։ Ես նրան երկու անգամ տեսել էի պիոներների պալատում։ Ոչ մի կերպ սխալվել չէի կարող. այդ նա էր։

Այդ դեպքն ինձ ուղղակի շշմեցրել էր։ Որտեղի՞ց կարող էր նա իմանալ։ Կիրովը մոտեցավ մեզ և ուղղակի հարցրեց.

— Դուք ի՞նչ է, պատրաստվել եք հնդկացիների մոտ գնալ, ճամփորդնե՛ր։

— Այո, հնդկացիների մոտ,— արդեն առանց թաքցնելու ասացի ես։

Նայելով մեզ, ապա շրջապատող բանվորներին, Կիրովը զուսպ ժպտալով հարցրեց.

— Դուք հնդկացիների մոտ եք գնում ոսկու, թե՞ փղոսկրի համար։

— Ոչ,—համարձակ պատասխանեց «Արծվի կտուցը»,— մենք հնդկացիներին կսովորեցնենք ոչ թե վիգվամներ, այլ իսկական տներ կառուցել, որպեսզի նրանց մոսկիտները և սպիտակ մրջյունները չըկծեն։ Մենք հնդիկներին կազատենք ստրկությունից։

— Օհո՜, դուք ուղղակի հերոսներ եք,— լուրջ ասաց Կիրովը։— Ինչպե՞ս են ձեր անունները։

— Սա «Բազեի ճիրանն» է, իսկ ես «Արծվի կտուցը»,— բռունցքով կրծքին խփելով ասաց իմ հավատարիմ ընկերը։

Բոլոր բանվորները ծիծաղեցին, իսկ ես չգիտեմ ինչու, անհարմար զգացի և ասացի.

— Իմ անունը Իգոր Սևերով է, իսկ սրանը՝ Տորոպով։

— Այդպե՛ս, այդպե՛ս,— հիմա արդեն ժպտալով արտասանեց Կիրովը.— իսկ դուք դեռ պիոներ չե՞ք, տղե՛րք։

— Ոչ, բայց շուտով կընդունվենք,— համոզված ասաց «Արծվի կտուցը»։

— Ինչպե՞ս կարող են ձեզ ընդունել, երբ դուք... ը՜... ինչպե՞ս է, հա՛, ջունգլի եք փախչում,— հարցրեց մի արտաքուստ բարկացկոտ բանվոր։

— Դե՜, մենք չէինք փախչի,— հանկարծ նվոցով ասաց «Արծվի կտուցը»։— Ա՛յ, սրան չընտրեցին, դրա համար էլ մենք փախչում ենք։ Գիտե՞ք ինչ քաջն է «Բազեի ճիրանը»։ Ամառը նա Նևայից մի աղջիկ փրրկեց, թե չէ պիտի խեղդվեր,— ինձ մատնացույց անելով սկսեց գլուխը գովել «Արծվի կտուցը»։— Դա արդարություն չէ, որ նրան չընտրեցին։ Ճիշտ եմ ասում, չէ՞։

— Ի՞նչ չընտրեցին,— հետաքրքրվեց Կիրովը։

— Դասարանի ավագ չընտրեցին։ Բոլոր մեր «դալկադեմ եղբայրները» նրա կողմն էին, իսկ ջոկատավար Կոստյան «ճամփոր-



— Կի՞րով,— շփոթված ասաց Նիկիտը։

դությունների և արկածների մասին գրքեր կարդացողներին չի սիրում։ Դրա համար էլ չընտրեցին։

«Արծվի կտուցը» թաքցրեց ամբողջ ճըշմարտությունը։

Ես շուտեցի Կիրովին խաբել և խոստովանեցի, թե ինչու ինձ չընտրեցին։

— Ջոկատավար Կոստյան շատ է ուզում, որ դու, Իգո՛ր, իսկական ճանապարհորդ դառնաս։

— Հենց այդ է, որ ոչ,— հակաճառեցի ես վշտացած։— Կոստյան մեր դպրոցի գրադարանապետին պատվիրել է, որ ինձ ճանապարհորդների մասին ոչ մի գիրք չտա։

Ժպիտը շարժեց Կիրովի շուրթերը և նա ասաց.

— Իսկ Կոստյան ո՞ր դպրոցում է ջոկատավար։

— Դե, ասացինք, էլի. մեր երկուհարյուրերորդում,— դժվարությամբ ասաց «Արծվի կտուցը»։

Երբ ես փոշոտված ու քաղցած վերադարձա այդպես անակնկալ վերջացած «ճանապարհորդությունից», երբ ոտք դրեցի մեր բնակարանի շեմքից ներս, ինձ դիմավորեց մայրս։

— Ների՛ր ինձ, մայրի՛կ ջան, ես այլևս այդպիսի բան չեմ անի,— ցածրաձայն ասացի ես։

Նա ոչինչ չասաց, բայց ես հասկացա, որ ուզում էր ինձ հավատալ։

Վեցերորդ դասարան ես փոխադրվեցի լավ գնահատականներով։

Մի օր էլ, երբ մեր դպրոցում ցերեկույթ էր, ինձ շատ զարմացրեց մի բան։ Ջոկատավար Կոստյան, չգիտեմ ինչու, տղաների համար բարձրաձայն կարդում էր մի գիրք։ Այդ գրքում պատմվում էր, թե ինչպես դժվար անցանելի անտառի միջով անցել է Ուսսուրիական երկրամասի հայտնի ուսումնասիրող Վլադիմիր Կլավդիևիչ Արսենևը։ Նրա հետ էր որսորդ և հետախույզ Գոլդե Դերսու-Ուզալան։

Հենց որ Կոստյան վերջացրեց կարդալը, ես մոտեցա նրան և խնդրեցի, որ գիրքը տա՝ տեսնեմ։ Ջոկատավարը մի տեսակ խորհրդավոր ժպտաց և մեկնելով ինձ մեծ ու գեղեցիկ կազմով գիրքը, ասաց.

— Գիրքը քոնն է, վերցրո՜ւ։

*— Ի՞նչ,— երջանիկ շփոթմունքով շշընջացի ես։*

*— Դու կարդա, թե ինչ է գրված առաջին էջում...*

*Այստեղ երկրաբանը ճարպկորեն բարձրացավ փայտե փոքրիկ սանդուղքի վրա, քաշեց նոր պայուսակը, բացեց և այնտեղից հանեց մի գիրք։*

*— Մի վերցրու, Նիկի՛տ, կարդա, թե ինչ էր գրել այն ժամանակ Սերգեյ Միրոնովիչը։*

*Եվ Սևերովը մեկնեց բացված գիրքը։*

*— «Ապագա սովետական հետախույզին.— բարձրաձայն կարդաց Նիկիտը.— Լավ սովորիր, Իգո՛ր։ Քո գիտելիքները հայրենիքին պետք են։ Համարձակ կյանք մտիր։ Իսկ կյանքը ոսկե գիրք է և քեզ պես պատանի, բանասեր, անվախների համար դեռ շատ ոսկե էջեր կան ուսումնասիրելու այդ հրաշալի գրքում։*

*Ս. Մ. ԿԻՐՈՎ»։*

*— Կի՞րով,— շփոթված ասաց Նիկիտը և նայեց երկրաբանին։*

*— Այո,— մտածմունքի մեջ ասաց Սևերովը, կարծես հիշելով, ինչ-որ շատ կարևոր բան։— Այսպես, Կիրովը օգնեց ինձ իսկական հետախույզ դառնալ։*

## ԲՈՑԱՇՈՒՆՉ ՏՐԻԲՈՒՆԻ ՀԻՇԱՏԱԿԸ

Կիրովի տուն թանգարանը տեղավորված է Բաքվի չորս հարկանի, սև քարից շինված մի մեծ շենքում: Փողոցի կողմից շքամուտքի երկու կողքերին փակցված են մարմարյա երկու հուշատախտակ, որոնց վրա ոսկեզօծ տառերով ադրբեջաներեն և ռուսերեն գրված է. «Այստեղ 1921—1926 թվականներին ապրել է Ադրբեջանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար, ռևոլյուցիայի բոցաշունչ տրիբուն և մեծ Ստալինի արժանավոր զինակից Ս. Մ. Կիրովը»:

Շենքի ներսում, սպիտակ վարագույրներով պատած ապակեպատ ընդարձակ պատշգամբում տեղավորված է թանգարանի հարուստ նյութերի զգալի մասը: Դրանք այն նյութերն են, որոնք վերաբերվում են Ս. Մ. Կիրովի ուսանողական և ռևոլյուցիոն գործունեության առաջին տարիներին: Այդ հազվագյուտ փաստաթղթերի թվում է Ուրժումի քաղաքային դպրոցի կողմից տրված վկայականը: Մյուս կողմում կախված է նույն դպրոցի շենքի լուսանկարը, որտեղ 1897—1901 թվականներին սովորել է Սերգեյ Միրոնովիչը:

1904—1905 թվականներին Կիրովն իր ուսումը շարունակելու համար մեկնում է Տոմսկ: Այնտեղ նա և՛ աշխատում է, և՛ երեկոները հաճախում Տեխնոլոգիական ինստիտուտ: Այդտեղ էլ սկսվում է Կիրովի ռևոլյուցիոն գործունեությունը:

Մի նկարում պատկերված են 1905 թվականի ռևոլյուցիայի ծանր ու դժվարին օրերը: Երիտասարդ Կիրովը ելույթ է ունենում Տոմսկի քաղաքային կոմիտեի նիստում՝ զինված ապստամբություն կազմակերպելու հարցի շուրջը... Կիրովը Տոմսկի առաջավոր բանվորներից կազմակերպում է մարտական դրուժինաներ: Այդ է արտահայտում մի մեծ յուղաներկ կտավ: Մի ուրիշ նկարում կարելի է տեսնել Տոմսկի գաղտնի տպարանի շենքը, որը 1906 թվականին կազմակերպել է Կիրովը:

Ցարական ժանդարմերիայի տեսողության դաշտից չէր կարող վրիպել այնպիսի մի բոցաշունչ ռևոլյուցիոներ, ինչպիսին էր Կիրովը: Ահա և Տոմսկի դատարանի 1906 թվականի փետրվարի 26-ի որոշման պատճենը Կիրովին ձերբակալելու մասին: Թանգարանի մի այլ սենյակում պատվանդանի վրա դրված է Սերգեյ Միրոնովիչի բրոնզե արձանը: Ապակեպատ ցուցափեղկերի մեջ խնամքով դասավորված են մեծ ռևոլյուցիոների անձնական փաստաթղթերը: Ահա այն մանդատը, որով նա 1922 թվականին ընտրվել է Սովետների 10-րդ համագումարի դելեգատ: Կից սենյակում պահպանվում են Սերգեյ Միրոնովիչի անձնական իրերը և հագուստները:

Հաջորդ սենյակը, որն ավելի մեծ է և լուսավոր, եղել է Սերգեյ Միրոնովիչի աշխատասենյակը: Գրասեղանից փոքր ինչ այն կողմ դրված է գրքերի մի մեծ պահարան: Նրա մեջ խնամքով դասավորված են Լենինի այդ ժամանակ լույս տեսած բոլոր գրքերը:

Պետական կարևոր գործերով այնքան ծանրաբեռնված լինելուց հետո էլ Սերգեյ Միրոնովիչը անչափ սիրում և զբաղվում էր սպորտով ու որսորդությամբ: Նույն սենյակում դրված են որսորդական զանազան պարագաներ՝ կաշվե մեծ պայուսակ, հրացանի փամփուշտներ, կոտորակ, մի զույգ ասիական բերև չստեր և այլ իրեր: Ահա «Օխոտա վ Զակավկազյե» ամսագրի համարներից մեկը: Նրա կազմի վրա կապույտ թանաքով գրված է. «Կովկասյան Կարմրադրոշ Բանակի Ռազմա-Որսորդական Ընկերության պատվավոր անդամ ընկեր Կիրովին»:

Հաջորդ սենյակը եղել է Կիրովի ննջարանը: Սենյակի կենտրոնում, պատվանդանի վրա, ապակեպատ շրջանակի մեջ դրված է Սերգեյ Միրոնովիչի գիպսից քանդակած պարտրեն:

Թանգարանի այցելուներն այդ նվիրական շենքից միշտ դուրս են գալիս անջնջելի տպավորություններով:

ՀՐ. ՂԱԶԱՐՅԱՆ

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

# ՄՏԵՐԻՄՆԵՐԻ ԿՈԼԵԿՏԻՎԸ

Նոյեմբեր ամիսն էր։ Մաքսիմ Գորկու անվան միջնակարգ դպրոցի 6-րդ «ա» դասարանում ծնողական ժողով էր։

Դասղեկ Վարդուշ Սվաղչյանը ամփոփում էր ուսումնական տարվա առաջին քառորդի արդյունքները։ Ժողովին ներկա Գայանե Սուսանյանը՝ Ռանոյի մայրը իմացավ, որ իր



Մ. Գորկու անվան դպրոցի 6-րդ «ա» դասարանի աշակերտուհի Ֆրիդա Փախչանյանը և օղակավար Կիմա Մադոյանը օգնում են Ռանոյին։

աղջիկը թվաբանությունից և աշխարհագրությունից «2» է ստացել։ Նա անհարմար զգաց։ Նրան թվում էր, թե բոլոր ժողովականները իրեն են նայում։

Պարզվեց, որ չորրորդ ջոկատի 34 պիոներներից վեցը զանազան առարկաներից «2» ունեն։

Հաջորդ օրը ջոկատի պիոներներն արդեն գիտեին, թե ովքեր են «2» ստացողները։ Առաջին օղակի օղակավար Կիմա Մատինյանը հանդիպեց ջոկատավար Ժաննա Գալստյանին և ասաց.

— Ընկե՛ր Գալստյան, Ռանոն մեր օղակի մեջ միակ «2» ստացողն է։ Նրան պետք է օգնել։

— Լավ,— համաձայնեց ջոկատավարը.— բայց դու, երբևիցե եղե՞լ ես Ռանոյի տանը։

Օղակավարը այդ անակնկալ հարցից հանկարծակիի եկավ։

— Ոչ, չեմ եղել։

— Չե՞ս եղել, ոչինչ, մենք հենց այսօր նրա մոտ կգնանք,— ասաց Ժաննան։

Դասերից հետո օղակավար Կիման և ջոկատավար Ժաննան արդեն Ռանոյի տանն էին։ Նրանք տեսան, որ Ռանոյի համար ստեղծված են պարապելու բոլոր հարմարությունները. գրասեղան, նստարան, ընդարձակ լուսավոր սենյակներ, գրենական պիտույքներ... ուրեմն էլ ի՞նչն էր պակաս։ Իհարկե՝ պարապելու եռանդը։

Մայրը՝ Գայանեն պատմեց, որ իր աղջիկը տանը քիչ է պարապում, շատ է խաղում, տնային հանձնարարությունները տհաճությամբ է կատարում։ Պարզվեց նաև, որ Ռանո Սուսանյանն ամեն օր նոր դասը պատրաստելիս մտածում է՝ վաղը «2» կստանա՞, թե՞ ոչ։ Այսպես, նա իր ժամանակը անարդյունավետ էր անցկացնում։

Ժաննան և Կիման ուշադիր լսում էին ծեր կնոջը։

— Աղջիկնե՛ր, խնդրում եմ, հաճախակի եկեք Ռանոյի մոտ, հետաքրքրվեցեք նրա կյանքով,— խնդրեց մայրը։

— Շատ բարի, կգանք, կօգնենք Ռանոյին,— համաձայնեց Կիման։

«Լավ է,— աղջիկների գնալուց հետո

մտածեց Գայանեն,— աղջկանս որ հետևեն, էլ ծուլություն չի անի»։

Օղակավարուհի Կիման սկսեց հաճախ գալ Ռանոյի մոտ։ Շուտով նրանց մեջ ստեղծվեց սերտ մտերմություն։

Ընկերուհիներն ամենից առաջ կազմեցին օրվա ռեժիմ, շատ ժամեր հատկացրին հատկապես այն առարկաներին, որոնցից վատ ուներ Սուսանյանը։ Նրանք թվաբանական շատ վարժություններ էին կատարում, խնդիրներ լուծում։ Օղակավարուհին նկատում էր, որ անցած շատ թեմաներ ընկերուհին չգիտե և սովորեցնում էր նրան։

— Ռանո՛, ընկեր Ժաննան վաղվանից մեզ հետ արտադասարանական խմբակի պարապմունք է ունենալու թվաբանությունից,— մի օր ասաց նրան Կիման,— ուզո՞ւմ ես, դու էլ եկ։

— Անպայման,— ուրախացավ Ռանոն։

Նրանք սկսեցին հաճախել խմբակի պարապմունքներին։

Խմբակում Ժաննան միշտ հետևում, օգնում ու խրախուսում էր Ռանոյին։ Նոր նյութն անցնելուց հետո կրկնել էր տալիս անցածը՝ «Հարաբերություններ, համեմատություններ և համեմատական բաժանում» թեման, որը շատ աղոտ գիտեր Ռանոն։

Պատահում էր, որ պարապմունքներից հետո ընկերուհիները Ռանոյի հետ գնում էին կինո, թատրոն, օպերա, կամ էքսկուրսիա։ Լավ էին աշխատում նաև այն օղակները, որտեղ մեկական առարկայից «2» էին ստացել Լիլիկը, Ջեմման, Ռիման։

Լարված և համառ պարապմունքի ամբողջ մեկ ամիս անցկացրին նրանք։ Ռանոն շատ էր փոխվել. այլևս այն ծույլը չէր։ Ամեն օր, երբ դասերից հետո վերադառնում էր տուն, զվարթադեմ գրկում էր մորը և ցույց տալիս օրագիրը։ Իսկ օրագրում այլևս երկուսներ չէին երևում։

Գայանեն գոհ սրտով դիտում էր աղջկա օրագիրը և շնորհակալություն հայտնում իր հոգատար ընկերուհիներին։

Գ. ՌՈՄՐ-ՇԱՏ

---

# ԱՆՀԱՄԲԵՐ ԼԱԼԻԿԸ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Գ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



Վա՛յ, այն ո՞վ է, այն ո՞վ է,
Այս ինչքա՜ն էլ ձայնով է.
Լաց է լինում անդադար,
Ասում «Մամա՛, հոպա տա՛ր»։
Ախր մաման ի՞նչ անի,
Այսօր նա շատ գործ ունի։
Մաման պիտի տուն մաքրի,
Մաման պիտի հաց բերի,
Պիտի ճաշ տա հայրիկին,
Գոգնոց կարի լալիկին։
— Քիչ սպասիր, լալի՛կ ջան.
Տեղ կտանի քեզ մաման...
Իսկ լալիկը ազտզում,
Թե՝ «Չէ՛, հոպա եմ ուզում»։
Չեղա՛վ, այս մեր լալիկը
Շատ անհամբեր բալիկ է։
Հենց ման գալը գալիս է,
Չի համբերում, լալիս է...

# ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

ՆՈՐ-ԱՅՐ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Գործարան գնալու օրվա առավոտյան Սուրիկը շատ վաղ արթնացավ և սկսեց արագ հագնվել։ Լվացվեց, սանրվեց ու նստեց սեղանի մոտ։ Նախաճաշելուց հետո, Սուրիկն ու հայրը զվարթ դեմքերով դուրս եկան փողոց։

Գործարանի ավտոբուսը նրանց կես ժամում տեղ հասցրեց։

— Սպասելու ես ընկերների՞դ,— ավտոբուսից իջնելով հարցրեց հայրը։

— Այո, այդպես ենք որոշել։

— Լավ, սպասիր. իսկ ես շտապում եմ։

Շուտով մեծ ժամացույցի տակ հավաքվեցին օղակի բոլոր անդամները։ Օղակավարը գործարանի մեծ դարբասի մոտ հերթապահին ցույց տվեց անցաթուղթը և պիոներներն ուրախ զրուցելով ներս մտան։

Կարբիդի ցեխի մոտ պիոներներին դիմավորեց ինժեներ-տեխնոլոգ Գևորգը, որին Սուրիկը շատ անգամ տեսել էր իրենց տանը և անտառում՝ զբոսանքի ժամանակ։



Շուտով նրանք կրի այրման ցեխում էին:

— Բարև, պիոներնե՛ր,— ողջունեց նա,— ինձ հանձնարարված է ձեզ ցույց տալ և պատմել, թե ինչպես ենք կարբիդ ստանում և ինչ նշանակություն ունի նա մեր երկրի համար։ Գնանք։

Պիոներները հետևեցին ինժեներ Գևորգին։ Շուտով նրանք կրի այրման ցեխում էին, վառարանների մոտ։

— Կարբիդը ստացվում է այրված կրի և քարածխի միացումից,— սկսեց պատմել ինժեները.— իսկ մեր երկրի ընդերքում կրաքարի և քարածխի անսպառ պաշարներ կան։ Ամեն օր գնացքները մեր ռեսպուբլիկայի տարբեր հանքավայրերից հարյուրավոր վագոններով կրաքար են բերում, իսկ Դոնբասից ստացվում է քարածուխը։ Ահա այս վառարաններում այրում ենք այդ կիրը։ Հետո տեսակավորում ենք, և կշեռքի միջոցով լցնում բունկերը։ Հիմա մոտենանք կարբիդի վառարաններին։

Բոլորը սողպատե աստիճաններով վեր բարձրացան։ Վառարանն այդ ժամանակ այրված կիր ու քարածուխ էր ընդունում։

— Տեսնո՞ւմ եք, երկու բանվոր բարձում են վառարանը,— ցույց տալով բունկերների մոտ կանգնած բանվորներին ասաց նա։

Բունկերներից աղմկոտ ու անընդհատ հոսանքով վառարանի մեջ էր լցվում կիրն ու քարածուխը։ Բանվորները միայն նայում էին այդ հոսանքին։ Սուրիկը զարմացավ.

— Նրանք ոչինչ չեն անում, իսկ դուք ասում եք՝ բարձում են։

Ինժեներն ու բանվորները ծիծաղեցին։

— Այդ քեզ թվում է, Սուրի՛կ։ Նրանք ղեկավարում են բարձումը էլեկտրականության միջոցով։ Վառարանի մեջ երեք բաժին կիր պիտի լինի և մեկ բաժին քարածուխ։ Այդ լավ գիտեն բարձող բանվորները և միշտ պահպանում են հարաբերությունը։ Չկարծեք, թե հասարակ գործ են կատարում նրանք։

Այդ հարաբերությունը որ չպահպանվի, իսկական կարբիդ չի ստացվի։

Երբ վառարանն արդեն լցվել էր, բանվորները դադարեցրին կրի և քարածխի հոսանքն ու վահանաձև դուռն ամուր փակեցին։

— Այսպես, ամբողջ օրը՝ գիշեր ու ցերեկ վառարանները լցվում են։ Դրանից հետո սկսվում է կարբիդ եփելը։

Պիոներների հետ ցած իջնելով վառարանի մոտից, ինժեները նրանց առաջնորդեց կարբիդի ցեխ։ Կարբիդի ցեխում միալար բզզոցով անընդհատ աշխատում էին վառարանները։ Նրանցից բարձրացող հրեղեն լեզուները ձգվում էին մինչև բարձր առաստաղը։

Կարբիդագործների հագին միատեսակ կապույտ կոստյումներ կային, գլխներին՝ կարճ հովարով թաղիքյա գլխարկներ, աչքերին՝ մեծ ուռուցիկ ապակիներով ակնոցներ։

Ցեխում շատ շոգ էր։ Երեխաները ծարավ զգացին։

Սուրիկն առաջին հայացքից ճանաչեց հայրիկին. իսկ հայրիկը նայեց ժամացույցին։

— Լավ ժամանակին եկաք,— շոյելով տղայի գլուխը ասաց վարպետ Օհանը,— մի քանի րոպեից հետո մենք բաց կթողնենք եփված կարբիդը։

— Մի՞թե ամեն օր այդպիսի շորեր եք հագնում,— ոտից գլուխ նայելով հորը, հարցրեց Սուրիկը։

— Ամեն օր։ Այս շորերով աշխատելը շատ հանգիստ է. իսկ կոշիկները կարված են կրակին դիմացող հատուկ նյութից, որ ոտքերս չայրվեն,— բացատրեց հայրը։

— Իսկ այդ ի՞նչ մեծ ակնոցներ են,— ծիծաղեց Մանիկը։

Կարբիդագործները նույնպես ծիծաղեցին։

— Սրանք լավ տեսնելու համար չեն, աղջիկս։ Սրանք կրակապահովիչներ են։ Դե, արդեն ժամանակն է, որ տեսնեք, թե ինչքան կարևոր են այդ ակնոցները։

Այս ասելով վարպետ Օհանը նորից նայեց ժամացույցին և ձեռքը բարձրացրեց։ Առաստաղից շղթայով կախված հսկայական մուրճին մոտեցան երեք հոգի։ Նրանք վարպետ Օհանի հետ մուրճը մոտեցրին վառա-



— Խմիր,— լիքը բաժակը նրան մեկնելով ասաց հայրը:

րանի անցքին, ուր հազիվ երևում էր կրակը։ Վարպետը սեղմեց էլեկտրական կոճակը։ Մուրճը սկսեց հարվածել, և հազիվ երևացող կրակը մեծացավ։ Դադարեցին մուրճի հարվածները։ Կարբիդագործները բրեզենտյա հաստ ձեռնոցները հագան ու վերցնելով պողպատյա երկար ձողերը, սկսեցին խառնել վառարանի ներսը։ Երբ ձողերը դուրս էին քաշում, կարբիդագործների գլխին և շուրջը կայծեր էին ճայթում, իսկ վերևում ավելի ուժգնորեն բռնկվում էին բոցերը։

Կարբիդագործները դադարեցին վառարանի ներսը խառնել։ Նորից միալար բզզոցով սկսեցին աշխատել վառարանները։

— Կիրն ու քարածուխը միացնելու համար վառարանի մեջ բարձր լարվածության հոսանք է տրվում։ Ստացվում է քիմիական նոր միացում։ Այդ միացումը հալում է կիրն ու քարածուխը՝ եփում ու դարձնում կարբիդ։

— Հիմա դուք կտեսնեք, թե ինչ է ստացվել վառարանում եփած կրից և քարածխից,— ավելացրեց ինժեներ Գևորգը։

*Վարպետ Օհանը նորից նայեց ժամացույցին։ Այդ ժամանակ ցեխ մտավ սպիտակ խալաթ հագած մի կին և ծածկված դույլը դրեց կարբիդագործների մոտ։ Նրանք բաց արեցին դույլի կափարիչը և իրենց բաժակներով սկսեցին գազային ջուր խմել։*

*Սուրիկի կոկորդը չորացել էր։ Նա մոտեցավ հայրիկին։*

*— Խմիր,— լիքը բաժակը նրան մեկնելով ասաց հայրը։*

*Սուրիկը խմեց գազային ջուրը և միանգամից հովացավ։*

*Վառարանի վերևում կարմիր լույս վառվեց։ Ինժեներ Գևորգը պիոներներին առաջարկեց հեռու կանգնել։ Կրկին վառարանին մոտեցրին մուրճը, որ այս անգամ ավելի ուժգին հարվածներ էր տեղում անցքը փակած մասսայի վրա։*

*Վառարանի անցքը գնալով մեծացավ, կարմրեց, իսկ վերևում այնպիսի բոց բարձրացավ, որ կարծես հազարավոր լամպեր վառվեցին ցեխում։ Հենց այդ ժամանակ Սուրիկին թվաց, թե իր գլխավերևով գնացք է անցնում։ Նայեց վերև։ Բարձր, առաստաղի տակով դեպի վառարանն էր գնում պողպատե անիվներ ունեցող մի հսկայական կաթսա։ Կաթսան կանգ առավ վառարանի վերևը և ցած իջավ այն ժամանակ, երբ վառարանի անցքից դուրս ժայթքեց շիկացած լավան։*

*— Ահա և պատրաստի կարբիդը,—ասաց ինժեներ Գևորգը։*

*Պիոներների աչքի առաջ, կաթսայի մեջ շարունակում էր խլթխլթալ կարբիդը։ Երբ նրանք ցեխից դուրս էին գալիս, նկատեցին, որ կրակի փայլն անցնում էր ու կաթսայի մեջ գտնվող կարբիդը երկաթի գույն էր ստանում։*

*Հնչեց աշխատանքի ընդմիջման զչակը։ Կարբիդագործները դուրս եկան ցեխից։ Երեխաները դրսում դարձյալ շրջապատեցին ինժեներին։*

*— Հետո ո՞ւր են տանում այդ կարբիդը,— հարցրեց Վահանիկը։*

*— Այդ կարբիդը դեռ երկար ճանապարհորդություն է կատարելու մեր գործարանի մյուս ցեխերում։ Մի քանի օրից հետո եկեք և ես ձեզ կպատմեմ ու ցույց կտամ, թե ինչ է ստացվում կարբիդից։*

*— Իսկ հայրիկն ու մյուսները ո՞ւր գնացին,— հետաքրքրվեց Սուրիկը։*

*— Նրանք գնացին լողանալու։ Ցնցուղի տակ տաք կլողանան, կփոխեն իրենց շորերը, հետո կգնան ճաշարան։*

*— Կարբիդագործները մեր երկրում միայն վեց ժամ են աշխատում,— ասաց ինժեներ Գևորգը։— Երեք ժամից հետո մի ժամ ընդմիջում են ունենում հանգստանալու և երկրորդ նախաճաշի համար։ Պետության հաշվին նրանց լավ սնունդ է տրվում, որ միշտ առողջ և ուժեղ լինեն։*

*Պիոներները շնորհակալություն հայտնեցին ինժեներին և ուրախ երգելով դուրս եկան գործարանից։*

*Սուրիկն անչափ ուրախ էր, որ իր հայրը կարբիդագործ վարպետ է։*

## ԼՈՒՍԻՆ՛Ն ՈՒ ՆՈՒՆԻԿԸ

*Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Լուսինը լույս է տալիս,
Նունիկին դուր է գալիս.
— Տե՛ս, Գարունիկ ինչ կլոր
Գնդակ է մեծ, լուսավոր.
Թե իմ ձեռքին լիներ նա,
Կխաղայի ես մենակ
Ու չէի տա ոչ մեկին,
Ո՛չ Սեբին, ո՛չ Համիկին...
Հենց մտնեի մեր բակը,
Լույս կտար իմ գնդակը։
— Ինչո՞ւ մենակ դու խաղաս,
Այդ էր էլի հենց պակաս...
Թե մենակ ես խաղալու
Ու մեզ գնդակ չես տալու,
Ավելի լավ կլինի
Որ գնդակը երկնքի,
Երկնքում էլ հենց մնա,
Բոլորիս էլ լույս տա նա։

# ՊԱՏՄՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

Դեկտեմբերի 26-ին լրանում է Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի ղեկավար, Չինաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նախագահ ընկեր Մաո Ցզե-դունի ծննդյան 60 տարին:

Չինաստանում ամենուրեք պատմվածքներ կարելի է լսել Մաո Ցզե-դունի կյանքից: Ահա թե ինչ է պատմում չին ժողովուրդը նրա մանկական և պատանեկական տարիների մասին:

## ԳՅՈՒՂԱՑՈՒ ԶԱՎԱԿ ՄԱՈՆ

*Գյուղացու զավակ Մաոն ծնվել է Կենտրոնական Չինաստանի Խունան նահանգի Շաո-Շան գյուղում: Մաոյի ծնողները չքավոր մարդիկ էին: Նրանք արևածագից մինչև մայրամուտ աշխատում էին կալվածատիրոջ դաշտում: Փոքրիկ էր Մաոն, բայց մայրը նրան տանում էր իր հետ լեռնահովիտը և ասում.*

*— Աշխատի՛ր, աշխատի՛ր, որդի՛ս, աշխատանքն է մեր միակ բարեկամը:*

*Եվ Մաոն աշխատում էր: Նա իր փոքրիկ ձեռքերով սերմեր էր ցանում հողի մեջ, որոնցից բանջարեղեն էր աճում. իսկ երբ վրա էր հասնում աշունը, նրանք հավաքում էին բերքը, բարձում սայլակին ու տանում կալվածատիրոջ տուն: Փոքրիկ Մաոն շատ էր վշտանում, որ իրենց աճեցրած բերքի մեծ մասը վերցնում է կալվածատերը:*

*Եվ ահա մի անգամ, երբ նրա հայրը մյուս գյուղացիների հետ միասին բերքը հանձնում էր կալվածատիրոջ հարկահավաքներին, նա չկարողացավ զսպել իր զայրույթը և բարձր ձայնով գոչեց.*

*— Դե՛, բավակա՛ն է, այդքանը ուտելով կալվածատերը կպայթի:*

## ՆԱ ԵՂԵԼ Է ԼԵՌՆԵՐՈՒՄ

*— Նա եղել է լեռներում,— այսպես են ասում ազատության պայքարին մասնակցած քաջարի մարդու մասին:*

*Այդ պատահեց այն օրը, երբ հայրը առաջին անգամ տարավ նրան դպրոց: Կրծքին սեղմելով բոլոր հարազատների սքանչելի նվերները՝ բրնձից պատրաստված թուղթը, տուշի սրվակը և հիերոգլիֆներ գրելու վրձինը, նա մեծ հետաքրքրությամբ մտավ դպրոց:*

*Ուսուցիչը աշակերտներին տեղավորեց հատակին, իսկ ինքը նստեց ծղոտե խսրին, կողքին դնելով մի երկար եղեգնյա փայտ: Հետո նա քթին դրեց ակնոցները և ճչան ձայնով սկսեց խրատներ կարդալ: Այդ խրատները այնքան ձանձրալի էին, որ շատ շուտով տղաներն սկսեցին ճանճ որսալ ձանձրույթից:*

*Հանկարծ ուսուցչի եղեգնափայտն սկսեց ուժգին իջնել նրանց գլուխներին: Մաոն հեռու քաշվեց: Տեսնելով այդ, ուսուցիչը նրան նշան արեց, որ մոտենա: Մաոն գլուխը բացասաբար շարժեց: Զայրացած ուսուցիչը տեղից վեր ցատկեց, որ նրան ծեծի: Մաոն*



Մաո Ցզե-դուն
Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի կենտրոնական կառավարության նախագահ:
*(Ֆոտոխրոնիկա՝ ՏԱՍՍ)*

պատուհանից դուրս թռավ ու անհետացավ հեռվում։

Փոքրիկ Մաոն փախավ լեռները։ Նա գիտեր, որ այնտեղ միշտ պատսպարվում էին բոլոր անընկճելիները, գյուղացիների ազատարարները, որոնց կայսրը սպառնում էր գլխատել։

Մաոն երեք օր մնաց լեռներում։ Քաղցը, սաստիկ ցուրտը տանջում էին նրան, բայց նա հաղթահարեց այդ բոլորը։

## «ԵՐԱԶԵԼԻ ԵՐԿԻՐ»

«Երազելի երկիր». այսպես էր վերնագրված այն շարադրությունը, որը հանձնարարված էր գրել Ջանշայի միջնակարգ դպրոցի շրջանավարտներին. նրանց թվում էր նաև Մաո Ցզե-դունը։

Ինչ ասես չէին գրել իրենց տետրերում հարուստների տղաները։ Չէ՞ որ նրանց ծնողներն իրենց երեխաներին շարունակ ասում էին.

— Հենց որ դպրոցն ավարտեք, գնացեք արտասահման, որ խելք հավաքեք։

Եվ դպրոցն ավարտելու նախօրյակին հարուստների երեխաներն արդեն քննարկում էին այն հարցը, թե ով ուր պետք է գնա, ընտրում էին իրենց «երազելի երկիրը»։ Նրանք իրենց շարադրություններում գովերգում էին Ամերիկան, Անգլիան, Ճապոնիան, որպես իրենց համար երազելի երկրներ։ Միայն Մաոյի շարադրության մեջ գրված էր, որ նրա երազելի երկիրը հարազատ Չինաստանն է. աղատ, երջանիկ Չինաստանը, որի համար պետք է պայքարել։

Հարուստների երեխաները սկսեցին ծիծաղել նրա վրա. ա՛յ քեզ բա՜ն, այ քեզ գյուղացի՜, իր քթից դենը ոչինչ չի տեսնում։

Չծիծաղեց միայն դպրոցի դիրեկտորը՝ չինական կայսրի ծառան։ Նա չղայնությունից ճմռթեց Մաոյի տետրակը, հետո նորից հարթեց ու կանչեց Մաոյին իր մոտ։ Կեղծավոր ժպիտը դեմքին նա Մաոյին ասաց.

— Ձեր շարադրությունը դերազանցում է բոլոր աշակերտների գրածները և դուրս է գալիս դպրոցական շարադրության շրջանակներից. ուրեմն դուք մեր դպրոցում այլևս անելիք չունեք։ Եթե դուք քաղաքավարությամբ մեզանից հեռանաք, մենք ձեզ գովասանագիր կտանք։

Մաոն անմիջապես հասկացավ, որ դա պատրվակ էր իրեն հեռացնելու համար և չհամաձայնեց։ Նա մնաց, որ ավարտի դպրոցն իր ընկերների հետ միասին, որոնց մեջ շատ կային այնպիսիները, որոնք նրան համարում էին իրենց առաջատարը։

## ԱՐԴԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Փոքրիկ Մաոն արդարության համար առաջին անգամ իր բռունցքը բարձրացրեց, երբ սովորում էր Սյանթանի դպրոցում։

Մի անգամ Սյանթան քաղաքում խռովություն ծագեց։ Քաղցից հուսահատված մարդիկ հավաքվել էին գավառապետի պալատի մոտ և գոչում էին.

— Արդարությո՜ւն, արդարությո՜ւն...

Բոլոր դպրոցականները դադարեցրել էին իրենց պարապմունքները և բարձրանալով տանիքների ու ծառերի վրա, սպասում էին, թե ինչով է վերջանալու այդ բոլորը։ Չէ՞ որ իրենց հայրերն ու եղբայրները գտնվում էին բազմության մեջ։

Երկար ժամանակ գավառապետը դուրս չէր գալիս։ Վերջապես նա հայտնվեց և հոխորտալով սկսեց շփել աչքերը։

— Ինչո՞ւ եք աղմկում,— դիմեց նա հավաքվածներին, որոնք աղմուկով արթնացրել էին այդ փքված պարոնին։

— Բրինձ տուր, բրի՜նձ. մենք ուտել ենք ուզում,— միաբերան գոչեց ամբոխը։

— Ուտե՞լ, իսկ ո՞վ է արգելում ձեզ ուտել։ Հետևեցեք իմ օրինակին։ Լռությամբ փորներդ լցրեք ու պառկեցեք քնելու։

Այս ասելով պարոն գավառապետը խփեց իր հաստ փորին ու սկսեց ծիծաղել։ Մինչդեռ բազմությունը չէր ծիծաղում։

— Հրամայեցեք խանութները բաց անել, վաճառականները բրինձը պահում են, իսկ հետո այն վաճառում են թանկ գնով։ Մենք կործանվո՜ւմ ենք։

Վաճառականների սև արարքների մասին Սյանթանում գիտեր յուրաքանչյուր երեխա, բայց գավառապետն իր բարկությունը թափեց չքավորների վրա։

— Ծույլե՛ր, խռովարարնե՛ր,— գոռաց նա

ոտքը խփելով հատակին և պահակախումբ կանչեց։

Վրդովված տղաները սուլոցով պատասխանեցին նրա խոսքերին, իսկ մեծահասակները քարերի ու փայտերի միջոցով ցրեցին պահակախումբը։ Նրանք իրենց ուժերով կարգ ու կանոն հաստատեցին, ստիպեցին վաճառականներին՝ բաց անել խանութները և բրինձը վաճառել մատչելի գներով։

Սակայն շուտով կայսերական զորքերը մտան քաղաք և հաշիվ տեսան չքավորների հետ։ Նրանք ձերբակալեցին բազմաթիվ անմեղ մարդկանց և գլխատեցին նրանց միայն այն բանի համար, որ նրանք քաղցած էին և ուտել էին ուզում։ Հասարակ ժողովուրդը սգի մեջ էր, իսկ հարուստները հրճվում էին։

Փոքրիկ Մաոյի սիրտը զայրույթով լցվեց այդ անարդարությունից։ Նա վեր պարզեց իր բռունցքը և արցունքները զսպելով գոռաց.

— Երբ մեծանամ, ես ձեզ ցույց կտամ...

Դե, ինչպես կարող էին հավաքվածները իմանալ, որ այդ պատանին ապագա Մաո Ցզե-դունն էր։




(Հեքիաթ)

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Մի խումբ տղաներ ցուրտ լուսաբացին
Գյուղից դուրս եկան, անտառ գնացին,
Որ մի եղևնի բերեն անպատճառ,
Նոր տարվա նվեր դպրոցի համար...

Մտան անտառ թե չէ, տեսան մի փոքրիկ ու սիրուն եղևնի։

Գլխին՝ ձյունե բազ,
Թիկնոց՝ ուսերին,
Ձյունե գորգն իր տակ,
Ձեռնոց՝ բաբերին...

Ուրախ-ուրախ մոտ վազեցին, բայց ծառի տակ կանգնած գայլը չթողեց, որ ձեռք տան ծառին։ Տղաներն առանց վախենալու դիմեցին նրան, որ եղևնին տա իրենց, տանեն զարդարեն ու նոր տարին ուրախ դիմավորեն։

Գայլն ասաց՝— Բերեք
Ցոր կով ու յոր գառ,
Կտրեք ու տարեք
Հազար ու մի ծառ...

Ասաց ու ուզեց հարձակվել, բայց տղաները մեծ-մեծ ձնագնդեր նետեցին գայլի վրա, չոր ճյուղերից ջահ վառեցին ու գնացին առաջ։

Մի ուրիշ եղևնու տակ էլ արջի որջ տեսան։ Կես ձմեռ քնած արջը լսեց նրանց ձայնը և արթնացավ։ Տղաները նրանից էլ նույն բանը խնդրեցին։ Արջը թեք-թեք նայեց ու գոռաց.

— Հենց հիմա բերեք
Մեղր մի տակառ,
Կտրեք ու տարեք
Թեկուզ տասը ծառ...

Այդ ձմռան ցրտին ո՞րտեղից բերեին մի տակառ մեղր։ Տասը ծառ էլ հարկավոր չէր. մի ծառ էր պետք։ Տղաները տեսան, որ արջին համոզել չի լինի, թողեցին հեռացան։

Ավելի բարձր ու գեղեցիկ մի եղևնու տակ տեսան շեկլիկ աղվեսին, որ արագ-արագ պտտվում էր ծառի շուրջը։

Ծափ զարկեցին, վազեցին մոտ
Եվ ասացին՝— Մեր հի՛ն ծանոթ,
Այս եղևնին կտա՞ս դու մեզ…
Շեկը ժպտաց խոնարհ ու հեզ.
— Հապա էլ ո՞ւմ… Բայց մի չնչին
Բան հասցրեք դուք իմ դնչին:
Ձեր գյուղն այդքան հավ, սագ ունի՝
Ես կարոտ եմ մի թռչունի…
Թռչնանոցը դուք մի՛ փակեք,
Երբ էլ որ գամ, ինձ մի՛ թակեք.
Այն ժամանակ, խնդրեմ, կտամ
Այս եղևնին շքեղ, փարթամ…
— Թռչնանո՞ցը… սրա՛ն մի տես.
Չէ, գազանի՛կ, շատ անմիտ ես.
Ամբողջ գյուղին լինի վնաս,
Իսկ դու ուտես ու ողջ մնա՞ս…

— Է՜, այս ծառից լավը կա.
Ա՛յ, մեր տատիկն է վկա,—
*աղմկեցին սկյուռները և տղաներին տարան հասցրին նապաստակների բացատը:*

Եկան, եկան,
Մեկ էլ տեսան՝
Սարի լանջին ձյունապատ,
Կանգնած է մի
Լույս եղևնի,
Ողջ ադամանդ ու արծաթ:

*Ծառի շուրջը մեծ ուրախություն էր: Նապաստակները պար բռնած պտտվում էին եղևնու շուրջը, երգում, պարում, թռչկոտում: Տղաները մոտեցան ծեր նապաստակին և խնդրեցին, որ այդ շողշողուն եղևնին նվիրեն իրենց դպրոցին: Նապաստակները հա-*



*Զայրացան տղաներն ու գնացին անտառի խորքը: Մեկ էլ տեսան ավելի շքեղ մի եղևնի: Այդ ծառի շուրջը, մյուս ծառերի ճյուղերին, պարում ու երգում էին սկյուռները:*

*Տղաները նայեցին նրանց և սկսեցին ծիծաղել: Սկյուռներն այս որ լսեցին, բարկացան.*

— Ինչի՞ վրա եք այդպես ծիծաղում,
Ինչո՞ւ չեք մեզ հետ պարում ու խաղում:

*Տղաները հարգանքով մոտեցան ու խնդրեցին, որ եղևնին նվիրեն իրենց և տոնածառի հանդեսին հյուր գան գյուղ…*

*մաձայնեցին: Տղաները շատ ուրախացան և խլշիկների թաթերը բռնեցին ու սկսեցին վեր-վեր թռչել:*

Մեկ էլ բարի այն պապիկը
Բարձրացրեց իր թաթիկը,
Թե՝ — Սպասեցե՜ք,
Ինձ ասացեք,
Ի՞նչ ծառի եք եկել դուք.
Առանց սղոց,
Առանց կացին՝
Պիտի տանեք մի կորո՞ւկ:

*Տղաներն ասացին, որ կացին էլ ունեն, սղոց էլ, բայց եկել են ծառն ընտրեն, որ*

*Հետո գան կտրեն։ Այդ րոպեին մի փոքրիկ նապաստակ մոտեցավ նրանց և...*

Ասաց ձայնով բարակ-մարակ.
— Ես վազում եմ քամուց արագ.
Ցույց տվեք ինձ ձեր դպրոցը՝
Գնամ բերեմ մեծ սղոցը...

*Տղաները ցույց տվին դպրոցի տեղը թե չէ, փոքրիկ խլէիկը կայծակի արագությամբ սլացավ գյուղ։ Պահակի թոռնիկը դիմավորեց նրան և հրավիրեց տուն։ Տատն ուրախ ժպտալով դիմավորեց նրանց...*

Հենց այդ պահին եկավ պապին,
Տեսավ հյուրին, սեղմեց բարը.
Ծիծաղեցին թոռն ու տատը։
— Աչքիս վրա, արագավազ
Պահակն եմ ես, լավ իմանաս։
Իսկույն լծեմ սահնակը մեր՝
Գնանք բերենք ծառը նվեր...

*Ասաց, կացին ու սղոց վերցրեց, սահնակը լծեց և քշեց դեպի անտառ։*

*Տղաներն աղմուկով դեմ եկան նրանց։ Ծեր պահակը մի հարվածով կտրեց եղևնին, իսկ տղաները տարան պառկեցրին սահնակի մեջ։ Հենց որ պապն ուզեց քշել սահնակը, նրանք այնպես ճվճվացին, որ մտրակը պապի ձեռքից ընկավ...*

— Մեզ հյուր թող գան սկյուռները,
Խլէիկները երկարականջ,
Թռչունները զվարթականչ...

*Պապը համաձայնեց։ Տղաները, սկյուռները և նապաստակները լցվեցին սահնակը, թռչուններն էլ օդ բարձրացան...*

Ու բոլորը երգ ու պարով
Թռան հերմակ ճանապարհով։
Մեկ էլ բիր, իր ծառի տակ՝
Աղվեսն ընկած աչքերը փակ,
Բերանը՝ բաց, քաքերը՝ ցից...
Փայտացել էր ձմռան ցրտից։

*Պապը սահնակը կանգնեցրեց, աղվեսին դրեց պարկի մեջ ու տվեց թոռանը, որ լավ պահի, թե չէ խորամանկը կարող է փախչել։*

Շուտով հասան արջի տանը,
Տեսան՝ լուռ է մրմրբանը,
Իսկ ծառն ընկած որջի առաջ,
Կանգ առան ու գոռացին՝ — Ա՜րջ...

*Արջն իր ուսով արմատահան արած ծառը նվեր տվեց, բայց որջից դուրս չեկավ։ Պապը նեղացավ ու պահանջեց, որ նա անպայման գա Նոր տարվա տոնին։*

Այս որ լսեց արջ ապերը,
Ելավ, տնկեց ծուռ թաթերը,
Տմբտմբալով արջավարի
Ուզեց օրոր-շորոր պարի,
Բայց երբ տեսավ ցուրտ ու ձմեռ՝
— Է՛հ, այս չեղավ... քնեմ ես դեռ...

*Ասաց ու նորից մտավ որջը։ Պապն ու տղաները տեսան, որ արջին համոզել չի լինի, ծառը կապեցին սահնակի կողին, ճանապարհին էլ սպանեցին գայլին և շտապեցին գյուղ։ Տղաներն ասացին, որ այդ գայլից լավ խրտվիլակ կսարքվի դպրոցի համար։*

*Սպանած գայլին կապեցին սահնակի առջևը։ Ձին որ նրան տեսավ, ավելի արագ վազեց։*

Հենց որ հասան տան բակը
Ու բաց արին տոպրակը,
Շեկը հանեց դունչը սուր,
Ուզեց փախչել, բայց իզուր։

*Այս որ տեսան, բերեցին հաստ պարանը ու տոպրակի բերանը պինդ-պինդ կապեցին։ Տղաներն ուրախ բացադանչեցին, որ այդ էլ նվեր կտան դպրոցին։*



Պապն էլ ասաց՝ — Ճիշտ է, ճիշտ,
Թող վանդակում ապրի միշտ...

*Հետո շողշողուն ծառը, գայլին և տոպրակում խլվլացող աղվեսին երգ ու խաղով տարան դպրոց։ Ծառն այնպես զարդարեցին, որ արևի նման լույս տվեց։ Սկսվեց նոր տարվա տոնը։*

*Գիշերվա կեսին մեծ ավտոն խաղալիք, միրգ ու գիրք լցրած եկավ Ձմեռ պապին։ Նա բոլորի հետ խաղաց, պարեց ու երգեց, տոպրակներով նվերներ տվեց ու մի մեծ զամբյուղ լիքը նվերներ առած իջավ գյուղ, որ այցելի մյուս երեխաներին։*

*Առավոտյան հյուրերն էլ նվերներ ստացան և ճանապարհ ընկան դեպի անտառ։*

Չե՞ք հավատում, դե լավ, եկեք,
Ինքներդ ձեր աչքով տեսեք։
Ձմեռ պապին հյուր կգա,
Ձեզ էլ միրգ ու գիրք կտա.
Ձյուն լինի թե ձնեբուք,
Կուրախանաք նաև դուք։

## ԼՈՎՈԶԵՐՅԱՆ ՏՈՒՆԴՐԱՅՈՒՄ

Հուլիսի տասնիննին հասանք Կիրովսկ քաղաքը։ Գիշերվա ժամը երեքն էր, բայց արևը լուսավորում էր ինչպես ցերեկը, և փողոցներում խաղում ու վազվզում էին երեխաները։ Մենք մեր մեծ Միության հյուսիսում էինք, որտեղ ցերեկվա տևողությունը հուլիսին 22 ժամ է։

Կիրովսկ քաղաքը գտնվում է Խիբինյան ձյունապատ լեռներում, Մ. Վուդյավր լճից ոչ հեռու։ Լենինգրադից մինչև Կիրովսկ ճանապարհն անցնում է բազմաթիվ մեծ ու մանր լճերի մոտով։

Կիրովսկում է Սովետական Միության Գիտությունների ակադեմիայի Կոլայի ֆիլիալը, որտեղ մենք ուղարկված էինք պրակտիկայի։ Մեր առաջին գործը եղավ այն, որ այցելեցինք քաղաքի երկրաբանական թանգարանը։ Այնտեղ տեսանք բազմատեսակ և



Տունդրայի մի տեսարան։

գույնզգույն միներալների այնքան խոշոր նմուշներ, որպիսին չէինք տեսել նույնիսկ Մոսկվայի ու Լենինգրադի թանգարաններում։ Ահա ցիանիտի երկնագույն ձողաձև բյուրեղները, որոնցից հրակայուն նյութեր են պատրաստում։ Ահա ապատիտի կանաչավուն, սառցի նման հսկայական կոշտերը։

Ապատիտի համաշխարհային վիթխարի պաշարներ կան Խիբինյան լեռներում։ Այդ միներալից պատրաստում են պարարտանյութեր։ Բացի դրանից նա 20 զանազան կիրառումներ ունի։ Պատի տակ, մի անկյունում դրված է նեֆելինային սիենիտի մի վիթխարի կոշտ՝ էվդիալիտ միներալի կարմիր բյուրեղներով։

Այդ միներալի մասին Կոլայի բնակիչները՝ սամերը, մի լեգենդ ունեն։ Էվդիալիտի բյուրեղները նրանք համարում են իրենց պապերի արյան բյուրեղացած կաթիլները, որ նրանք թափել են շվեդական զավթիչների դեմ կռվելու ժամանակ։

Հաջորդ օրը մենք ուրիշ վայրերից եկած ուսանողների հետ միասին մտանք ստորերկրյա փորվածքները և ծանոթացանք բազմաթիվ հանքերի, այդ անսպառ հարստություններով լի պահեստների հետ։

Դրանից հետո վերցրինք անհրաժեշտ սարքավորումներ, քարտեզներ, սննդամթերք և ուղևորվեցինք դեպի Ապատիտ կոչված կայանը՝ Իմանդրա լճի ափին։ Այնտեղ մեզ սպասում էր հիդրոպլանը։

Առաջին անգամն էր, որ մենք թռչելու էինք հիդրոպլանով։ Օդանավակայանի դեր էր կատարում լճի հարթ մակերեսը։ Մի քանի ժամ չանցած մեր հիդրոպլանը վայրէջք կատարեց Սուխոյկոս լճի վրա, որի խորությունը ընդամենը երկու մետր է։ Երբ մենք ափ դուրս եկանք, մեզ շրջապատեցին անթիվ-անհամար մոծակները։ Առանց հատուկ պաշտպանական դիմակների անհնարին էր աշխատել այս վայրերում։ Դրա համար էլ իսկույն հագանք մեզ հետ վերցրած դիմակները ու ձեռնոցները։

Մեր չուրջը տարածվում էր Լավոզերյան տունդրան իր անհամար մանր լճերով, ցածր թփուտներով, ձյունապատ ու անմարդաբնակ լեռներով: Այս դաժան կլիմայի պայմաններում սովետական պետությունը ստեղծել է բոլոր հնարավորությունները մասնագետների ապրելու և աշխատելու համար:

Այժմ մեր հայրենիքի այդ հեռավոր հյուսիսային անկյունն անապատ չէ, ինչպես սրանից 30 տարի առաջ էր: Կոլա թերակղզին հիմա լեռնային արդյունաբերության մեծ կենտրոն է: Նա երկաթուղով կապված է Միության խոշոր քաղաքների հետ: Սովետական իշխանության օրոք չորացվեցին շատ ճահիճներ, զարգացավ անասնապահությունը:

Տասնյոթ հոգուց բաղկացած մեր արշավախումբը բաժանվեց երկու ջոկատի: Ջոկատները մեկնեցին տարբեր ուղղություններով: Առաջին օրը լճափ վերադարձանք ուշ երեկոյան և խարույկ վառեցինք, որպեսզի մյուս ափից նկատեն և նավակ ուղարկեն՝ մեզ տեղափոխելու:

Լավոզերյան տունդրայում անցկացրինք մոտ երկու ամիս ու շատ մեծ փորձ ձեռք բերեցինք, որն անհրաժեշտ էր լեռնային ինժեներ դառնալու համար: Ազատ օրերին զբաղվում էինք կաքավների որսով և ձկնորսությամբ:

Բացվեց տունդրայի ցուրտ առավոտը: Խարույկի մոտ նստած խորովում էինք մի օր առաջ որսած ձկներն ու կաքավները: Ապա տաք հագնվելով շարժվեցինք դեպի լեռները, համապատասխան առաջադրանքներ կատարելու:

Երեկոյան ժամը ութին նորից խարույկ վառեցինք, նորից խորոված ձկներից, թռչուններից և համեղ պահածոներից պատրաստված ընթրիք վայելեցինք:

Մենք ամեն օր աշխատում էինք մինչև ժամը տասներկուսը, ապա մտնում մեր քնապարկերի մեջ ու վրաններում հանգիստ քնում:

Այնտեղից մենք Երևանի համալսարանի համար բերեցինք միներալների մի հրաշալի հավաքածու:

*Վ. ՄԵԼԻՔ-ՕՀԱՆՋԱՆՅԱՆ, Զ. ՍԻՄՈՆՅԱՆ*




*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Նկ. Ա. ԶԻՑԼԻԿՅԱՆԻ*

Զմռան մի ցուրտ առավոտ,
Հագած քուրքը իր բրդոտ,
Վարդան պապին աներկյուղ,
Ելավ գնաց Զորագյուղ:
Վերադարձին, ա՛յ քեզ բան,
Բուքը բռնեց ողջ ճամփան.
Բուք եմ ասում, բուք, ի՞նչ բուք,
Լավ էր պապին ուներ քուրք...
— Ինչքա՞ն կուզի՝ թող փչի,
Վարդան պապին անփորձ չի...
Հիշեց պապը, որ մի տեղ
Ծանոթ այր կար մութ ու նեղ.
Շփեց բեղն իր մեծ ու թավ,
Մի կերպ այրի մեջ մտավ,
Փակեց մուտքը այդ այրի.
Բուքն էլ նրան ի՞նչ կանի:
Պապը մորուքն իր շոյեց,
Եվ քարայրից դուրս նայեց:
— Էյ հե՜յ, էյ հե՜յ, տեսեք դուք,
Զուր ես եկել, ա՛յ չար բուք.
Հենց կարծում ես թե պապին
Մնացել է դեռ ճամփի՞ն...
Բուքը մնաց զարմացած,
Փնչաց, մնչաց ու գնաց...
Մի քիչ անց էր կեսօրից,
Ժպտաց արևը նորից.
Պապին ազատ շունչ առավ
Ու մութ այրից դուրս եկավ,
Ուրախ, զվարթ ու խնդուն,
Գնաց հասավ իրենց տուն:

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՆԿԱՐԻՉԸ

Բերքի տոն է, խնդություն: Հնչում է միալար պարեղանակը: Մանուկ ու ծեր պար են բռնել: Թվում է. թե ծառերն էլ տարածել են իրենց բերքը և մասնակցում են այդ մեծ տոնին: Կանայք գրկած տանում են ցորենի ոսկեգույն խրձերը: Կողովները լցված են քաղցր խնձորով, տարբեր գույնի խաղողով: Փոքրիկ տղան ամուր բռնել է համառ այծի եղջյուրներից և քաշում է: Մարդիկ ամբողջ տարին աշխատել են, իսկ այժմ զովերգում են իրենց կոլեկտիվ աշխատանքը:

Այս է պատկերում սովետահայ հայտնի նկարիչ Հակոբ Կոջոյանի «Բերքի տոն» յուղաներկ մեծ կտավը: Կոլտնտեսության երջանիկ կյանքն արտահայտող այդ նկարը դեռ 1947 թվականին Մոսկվայում բացված Համամիութենական գեղարվեստական ցուցահանդեսում հատուկ ուշադրության արժանացավ:

Հայաստանի ժողովրդական նկարիչ Հակոբ Կոջոյանը ծնվել է 1883 թվականի դեկտեմբերի 13-ին, Ախալցիխեում, ոսկերիչի ընտանիքում: Անվանի նկարչի իսկական ստեղծագործական կյանքը սկսվում է Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո: Սկզբնական շրջանում նա նկարում է ագիտացիոն բնույթի բազմաթիվ պլակատներ և քաղաքական սուր ծաղրանկարներ:

1931 թվականին Կոջոյանը կերտում է «Կոմունիստների գնդակահարությունը Զանգեզուրում» իր առաջին խոշոր գունանկարը:

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Հ. Կոջոյանի վրձինը նոր թափ է ստանում:

Հայ ժողովրդի հերոսական անցյալը, նրա էպոս «Սասունցի Դավիթը» միշտ էլ հմայել են արվեստագետին...

Հնչում են շեփորները: Սասնա ամրոցի դռների մոտ խռնվել է բազմությունը: Գուսանները զովերգում են նորածին դյուցազնին, որին ձեռքերի վրա պահած առաջ է բերում մի ալեհեր ծերունի: Այս նկարը կոչվում է «Դավթի ծնունդը»:

Բացի դրանից Հ. Կոջոյանը նշանավոր գրաֆիկ նկարիչ է: Նա մեծ վարպետությամբ ձևավորել է բազմաթիվ գրքեր մանուկների և մեծահասակների համար: Նա Երևանի Գեղարվեստական-թատերական ինստիտուտի պրոֆեսորն է:

Հ. Կոջոյանի լավագույն աշխատանքները ցուցադրված են Հայաստանի Պետական պատկերասրահում և Սովետական Միության զանազան թանգարաններում:

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ*

*Հայաստանի Պետական պատկերասրահի գիտական աշխատող*



«Բերքի տոնը» — *Գործ՝ Հ. ԿՈՋՈՅԱՆԻ*

# ՄԱՆՈՒԿՆԵՐԻՆ

*Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Կովկասի լեռնցիների մեջ մի գրույց էր տարածված...*

*Գերմանացի մի գեներալ գետի ափին նկատում է Լենինի բրոնզաձույլ արձանը և իր զինվորներին հրամայում է՝ վերցնել արձանը և հալել թեժ հնոցում։*

*Զինվորները տանում են արձանը։*

*Այդ գիշեր պարտիզաններն ավելի քաջաբար են կռվում։ Նրանց գնդացիրների կրակներից թնդում են ձորերը, լուսավորվում է ավտոյով տարվող Լենինի հուշարձանը։*




*... Քաղաքի մանուկների մի խումբ առավոտյան գալիս է գետափ։ Նրանք տեսնում են, որ Լենինը նորից իր տեղում կանգնած, բրոնզե ձեռքը պարզած կարծես ասում է.*

*— Բարեկամներ, չվհատվեք, մենք այս կռվում անպատճառ կհաղթենք։*

*Այս գեղեցիկ բալլադը տպագրված է Սամուիլ Մարշակի՝ վերջերս հայերեն լույս տեսած «Մանուկներին» ժողովածուի մեջ։*

*Մարշակի գրքում կա նաև «Սառցե կղզում» վերնագրով մի պոեմ։ Պոեմում նկարագրված է սովետական մարդկանց մարդասիրությունն ու խիզախությունը։*

*«Մանուկներին» գիրքը բաղկացած է յոթ բաժնից. բոլոր բաժիններն էլ բազմազան թեմաներ ունեն։ «Ամբողջ տարին» բաժինը երեխաներին ծանոթացնում է տարվա ամիսների հետ։ Մի այլ բաժնում հեղինակը մեզ ծանոթացնում է մի քանի երեխաների ուրախ կյանքին։ Բանաստեղծություններ կան ագահ գայլի, խորամանկ աղվեսի և այլ նյութերի մասին։*

*«Մայրենի լեզվի դասը» բանաստեղծությունը նվիրված է երեխաների ամենասիրած թեմաներից մեկին՝ խաղաղությանը։*

*Բանաստեղծ Ս. Մարշակի «Մանուկներին» գրքում դուք շատ հետաքրքիր և ուսանելի նյութեր կգտնեք։*

ԱՐՄ. ԹԱՄԱԶՅԱՆ

# «ՏԱՆԸ, ԲԱԿՈՒՄ, ՓՈՂՈՑՈՒՄ»

*Այսպես է կոչվում Սիլվա Կապուտիկյանի նոր գրքույկը։*

*Առաջին երկու բանաստեղծությունները նվիրված են Լենինին և Ստալինին։*

*«Լենինի ծնունդը» մի գողտրիկ բանաստեղծություն է, որտեղ ցույց է տրված երեխաների ջերմ սերը դեպի հանճարեղ առաջնորդը։ Լենինը նորից ու նորից ծնվում է ամեն մի մանկան աշխարհ գալու հետ։*

*Ժողովուրդների եղբայրությունն են արտահայտում՝ «Հայաստանից ենք գալիս» և «Մանուկների համար» ոտանավորները։ Երեխաները գնացք են սարքել ու խաղում են։ Նրանք գիտեն, որ Հայաստանը շինանյութ և մեքենաներ է ուղարկում երկրի մյուս կառուցումներին։ Նրանց խաղի բովանդակությունն էլ հենց այդ է»։*

*Շատ տպավորիչ է «Մեր ծառը» բանաստեղծությունը։ Երեխաները խնձորենի են տնկել բակում և բոլորին զգուշացնում են, որ զգույշ լինեն, ծառի դալար շիվերը չկոտրեն։ Բայց Հրաչը հեծանիվով անզգուշաբար ջարդում է ծառի մի ճյուղը։ Երեխաները վիրավոր ծառը կապկպում են և ճյուղը պինդ կպչում է ծառին։*




*«Ավոյի ծիլը» ոտանավորում ցույց է տրված, թե ինչպես փոքրիկ Ավոն լոբու մի հատիկ է ցանում ծաղկամանում և թե ինչպես է վարվում նա մատղաշ ծլի հետ։ Լավն են նաև «Ինձ լավ լսիր, իմ տիկնիկ», «Բլուզի գանգատը» և այլ ոտանավորները։*

ՀԵՂ. ՇԻՐԱԶՅԱՆ

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

## Ծաղիկ հսկան



Աշխարհի ամենամեծ ծաղիկը «Արնոլդիի Ռաֆլեզիան է», որի տրամագիծը մեկ մետր է։ Այդ ծաղիկն առաջին անգամ գտնըված է Սումատրա կղզում 1818 թվականին։ Նա աճում է պարազիտի նման, վայրի խաղողի որթի արմատների վրա. այն տեղերում, որտեղ հողը ծածկված է աղբով։ Ռաֆլեզիան արձակում է բողբոջներ, որոնք նախքան բացվելը հասնում են կաղամբի գլխի մեծության։ Լիակատար ծաղկման ժամանակ այդպիսի բողբոջը կշռում է մոտ վեց կիլոգրամ։ Ծաղիկը լեշի ուժեղ հոտ է արձակում և գրավում միջատներին։

Սովորական ռաֆլեզիաները մանր ծաղիկներ ունեն, աճում են Ֆիլիպինյան կղզիներում, Յավայում և Բորնեոյում։ Ուրիշ շատ մանր տեսակներ էլ կան, որոնք հաճախ հանդիպում են արևադարձային Ասիայում, Ամերիկայում և Հնդկական ու Խաղաղ օվկիանոսների կղզիներում, Իրանի տափաստաններում։

## Թռչնակեր սարդը



Հնդկաչին թերակղզու հարավում, Հարավային Ամերիկայի երկրներում և Յավա կղզում բազմանում են թռչնակեր-սարդեր։ Դրանք ամենախոշոր սարդերն են. ունեն 10—12 սանտիմետր երկարություն։ Դրանց մարմինը ծածկված է կոշտ ու երկար մազերով։ Ունեն 6—8 աչք, որոնք թեք խաչի ձևով են դասավորված։ Ցերեկն այդ սարդերը քնում են, խրվելով իրենց ցանցերի խորքը, իսկ մթնշաղն իջնելուն պես որսի են դուրս գալիս։ Թռչնակերների սարդոստայնն են ընկնում ոչ միայն միջատները, այլև մանր թռչունները, մողեսները և գորտերը։ Մի քանի տեսակ թռչնակերների սարդոստայնն այնքան ամուր է, որ 300 գրամ ծանրություն է պահում։

Հետաքրքիր է, որ ազդանշանային թելը, անպայման ամրացնում է իր թաթերից մեկին։ Երբ որսը նստում է սարդոստայնի վրա, թելը ձգվում է և քաշում սարդի թաթը, իմաց տալով, թե «ճաշը պատրաստ է»։

## Ծառեր մագլցող ձուկը



Այս ցատկող ձուկը գորշ-կանաչավուն գույնի է, ունի երկնագույն լողաններ և դուրս ընկած կարմիր աչքեր. ապրում է Հնդկական և Խաղաղ օվկիանոսի արևադարձային ջրերում, հենց ափերի մոտ, ողմոտ հատակի ջրաքույսերի մեջ։

Լիբերիայի (Աֆրիկայի արևմտյան ծովափ) նեգրերը այդ ձուկը կոչում են «Բոմմի», որ նշանակում է «ցատկող»։ Բոմմին աշխարհի բոլոր ձկներից տարբերվում է նրանով, որ երկար ժամանակ կարող է մնալ ցամաքում։ Բացի դրանից նրա կրծքի լողանները ոչ միայն լողալու, այլև ցամաքում շարժվելու, ծառեր և առափնյա ժայռեր մագլցելու համար են։ Շատ վախկոտ է։ Վտանգի դեպքում բոմմին ցատկումներ կատարելով արագ փախչում է դեպի ջուրը։ Նրա թռիչքը երկուերեք անգամ գերազանցում է ձկան մարմնի երկարությանը, որ սովորաբար 15 սանտիմետր է։

Ցատկողները սնվում են տեղատվության ժամանակ ափի տիղմի մեջ մնացած մանր ջրային կենդանիներով, ուտում են որդեր ու միջատներ։ Ցատկողների միսը չի ուտվում։ Դրա համար էլ ո՛չ ձկները, ո՛չ էլ թռչունները չեն հետապնդում նրանց։

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Կրոսվորդ

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ*

5. Հայ մեծ լուսավորիչ-դեմոկրատ գրող: 6. Հայ ժողովրդական նկարիչ: 8. Հայ ականավոր կոմպոզիտոր: 10. Ն. Վ. Գոգոլի հերոսներից: 14. Գրական ժանր: 15. Հայկական երաժշտության կլասիկ: 16. Ներգ պրոգրեսիվ երգիչ: 17. Հայ նշանավոր աշուղ: 20. Ժամանակակից ռուս նշանավոր գրող, հասարակական գործիչ: 22. Ռիմսկի-Կորսակովի օպերաներից: 23. «Ռևիզոր» կոմեդիայի հեղինակը: 26. Իսպանական հանճարեղ գրող, «Դոն-Կիխոտի» հեղինակը: 27. Քանդակագործ, Ստալինյան մրցանակի լաուրեատ, Բեռլինում կանգնեցված «Ազատարար զինվոր» արձանի հեղինակ: 28. «Դեմոկրատական երիտասարդության հիմնի» հեղինակ:

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ*

1. Հայ ականավոր դերասան: 2. Մ. Գորկու «Հատակում» պիեսի հերոսներից: 3. Ուկրաինական ժողովրդական պար: 4. Քանդակագործ, Ստալինյան մրցանակի լաուրեատ, «Սովետական Միության Հերոս Զոյա Կոսմոդեմյանսկայա» հուշարձանի հեղինակ: 7. Սովետահայ տաղանդավոր դերասանուհի: 9. Ռուս մեծ կոմպոզիտոր: 10. Ռուս հանճարեղ գիտնական և գրող: 12. Չայկովսկու սիմֆոնիկ ստեղծագործություններից: 13. Ձայնի տեսակ: 18. Ա. Ս. Պուշկինի բանաստեղծություններից: 19. Մ. Գորկու պիեսներից:



21. «Պատերազմ և խաղաղություն» վեպի հեղինակը: 24. Ռուս մեծ նկարիչ, «Բուռլակներ» կտավի հեղինակը: 25. 19-րդ դարի ռուս նշանավոր նկարիչ-ռեալիստ, «Եռյակ», «Հանգուցյալի հուղարկավորումը» կտավների հեղինակը:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

---

### Մտածիր և գտիր

Աշոտն ու Ռուբիկը դպրոցից վերադառնում էին տուն: Դրսում սաստիկ ցուրտ էր: Հանկարծ Աշոտը դիմելով Ռուբիկին հարցրեց.

— Կարո՞ղ ես ասել, Ռուբի՛կ, ինչո՞ւ միայն սառնամանիքի ժամանակ է ձյունը ճռճռում քայլելիս:

Ռուբիկը մի պահ մտածեց ու ասաց.

— Ճիշտ որ, ինչո՞ւ... Իսկ դու կարո՞ղ ես ասել, թե ինչո՞ւ ցուրտ ժամանակ ամենից շատ սառչում են մարդու ականջները...

### Ինչո՞ւ...

1. Ձյունից առաջացած ջուրը անդուրեկան համ ունի:

2. Թաց սպիտակեղենը չորանում է նաև սառնամանիքի ժամանակ:

3. Ձմռանը լուսնյակ գիշերները ավելի լուսավոր են լինում, քան ամռանը:

Երեխանե՛ր, մտածեցեք և գտեք այս հարցերի պատասխանները:

### Լուցկիներով



1. Այս ֆիգուրան կազմըված է տասնմեկ լուցկիներից. փոխելով նրանցից չորսի տեղերը, պետք է ստանալ տասը քառանկյունի:

2. Եռանկյան մեջ տեղափոխելով երեք լուցկի, կազմեցեք վեցանկյունանի ֆիգուրա:





3. Որպեսզի ստանաք երկու քառանկյունի, այս ֆիգուրայի մեջ տեղափոխեցեք վեց լուցկի:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Աշխատանքով — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ . . . . . 1
2. Գրիգորը — Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . . . . . . . 2
3. Յուրտ դեկտեմբերին — Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ 7
4. Բեռնակիրը — Պ. ՋԵՅԹՈՒՆՑՅԱՆ . . . . 10
5. Նվիրական խոսքեր — Ջ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . 12
6. Բոցաշունչ տրիբունի հիշատակը — ՀՐ. ՂԱԶԱՐՅԱՆ . . . . . . . . . 15
7. Մտերիմների կոլեկտիվը — Գ. ՈՒՄՐ-ՇԱՏ . 16
8. Անհամբեր Լալիկը — Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ . 17
9. Գործարանում — ՆՈՐ-ԱՅՐ . . . . . . . 18
10. Լուսինն ու Նունիկը — Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . 20
11. Պատմում է ժողովուրդը . . . . . . . . 21
12. Տոնածառը — Վ. ՏԱԼՅԱՆ . . . . . . . . 23
13. Լովոզերյան տունդրայում — Վ. Մ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ, Ջ. ՍԻՄՈՆՅԱՆ . . . . . . 25
14. Վարդան պապին ու բուքը — Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ 26
15. Ժողովրդական նկարիչը — Մ. ՂԱԶԱՐՅԱՆ . 28
16. Գրքերի աշխարհում . . . . . . . . . 29
17. Ամեն ինչի մասին . . . . . . . . . . 30
18. Հետաքրքիր ժամանց . . . . . . . . . 31
19. Մեր օրացույցը . . . . . . . . . . . 32


Շապիկը՝ նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 05510։ Պատվեր 862։ Տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 2. XII. 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# 1953 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## Մեծ բարեկամություն

Ֆաշիզմի դեմ մղվող դաժան մարտերի օրերն էին, 1943 թվականի դեկտեմբեր ամիսը: Սովետական Բանակը շատ քաղաքներ ու գյուղեր արդեն ազատագրել էր ֆաշիստական լծից: Մեր զորքերը շարունակում էին առաջ շարժվել դեպի արևմուտք: Թշնամու ջախջախված բանակները անընդհատ նահանջում էին, մարտերի դաշտերում թողնելով հազարավոր սպանվածներ ու վիրավորներ:

Այդ օրերին Մոսկվայում, Սովետական Միության ու Չեխոսլովակյան ռեսպուբլիկայի միջև կնքվեց բարեկամության պայմանագիրը: Երկու երկիր պարտավորվում էին միավորել իրենց ուժերը և ջախջախել ֆաշիստական բարբարոսներին: Մեր ազատարար բանակի հետ միասին փառավոր ուղի անցան նաև չեխոսլովակյան մարտիկները:

Պատերազմից հետո Չեխոսլովակիայում հաստատվեցին դեմոկրատական կարգեր: Ազատագրված չեխ ժողովուրդն այժմ իր երկրում կառուցում է սոցիալիզմ: Այդ գործում նրան օգնում է մեր մեծ Սովետական Միությունը: 1947 թվականը անբերրի տարի էր Չեխոսլովակիայում: Սովետական Միությունն այնտեղ ուղարկեց 600 հազար տոննա հացահատիկ: Չեխ և սլովակ ժողովուրդները շատ բարձր են գնահատում մեր ժողովուրդների իսկական բարեկամական օգնությունը: Այժմ երկու երկրներն էլ տնտեսական սերտ կապերով են կապված միմյանց հետ: Մեր Հայրենիքը Չեխոսլովակիա է ուղարկում գյուղատնտեսական մեքենաներ և այլ ապրանքներ, իսկ այնտեղից ստանում է զանազան տեսակի էլեկտրական մեքենաներ, մանուֆակտուրա, կոշկեղեն և այլ ապրանքներ:

Այս տարվա դեկտեմբերի 12-ին լրանում է Սովետա-Չեխոսլովակյան պայմանագրի տասը տարին:

## Ազատության երգիչը

*(Ա. Միցկևիչի ծննդյան 155 տարին)*

1824 թվականի աշնանը դեպի Պետերբուրգ էր սլանում մի կառք: Այդ կառքի մեջ գտնվում էր լեհ մեծ բանաստեղծ Ադամ Միցկևիչը, որն իր ազատասիրական հայացքների համար աքսորվել էր Ռուսաստան: Նա տխուր էր, որովհետև հայրենիքից



արտաքսված էր և ապրելու էր օտար մարդկանց մեջ: Բայց նա շուտով զգաց, որ այստեղ բարեկամներ կան, որոնք գրկաբաց ընդունեցին բանաստեղծին և սիրեցին նրան: Ռուսաստանում Միցկևիչն ուսումնասիրում է ռուսաց լեզուն և գրականությունը, մտերմանում է ապագա դեկաբրիստներ Ռիլեևի և Բեստուժևի հետ, լինում ռուս մեծ գրողներ Կռիլովի, Գրիբոյեդովի և մյուսների շրջապատում: 1826 թվականին Մոսկվայում նա ծանոթանում է Պուշկինի հետ: Ռուս հանճարեղ բանաստեղծը ջերմորեն սիրեց լեհ պոետին: Աքսորի հինգ տարվա ընթացքում Միցկևիչը գրեց շատ բանաստեղծություններ: Հիացմունքով ընդունվեց հատկապես նրա «Կոնրադ Վալլենրոդ» պոեմը: Պուշկինը նույնիսկ սկսեց թարգմանել այդ երկը: Պոեմում արտահայտված է Լեհաստանն անկախ տեսնելու գաղափարը:

1830 թվականին Նիկոլայ առաջինը դաժանորեն ճնշեց Լեհաստանում սկսված ապստամբությունը: Այդ բանը ծանր ազդեց Միցկևիչի վրա, որը իր «Պեգով» պոեմում մեղադրում է ցարին ապստամբությունը ճնշելու համար: «Բռնակալների անկման օրը կդառնա բոլոր ժողովուրդների բարեկամության և խաղաղության առաջին օրը»,— ասում է պոետը իր «Ուղերձ Ռուսաստանին» բանաստեղծության մեջ:

Այնուհետև Միցկևիչը մի վայրից անցնում է մյուսը: Փարիզում հրատարակում է «Ժողովրդական տրիբուն» թերթը, որտեղ տպագրված հոդվածներում պահանջում է փոխել տիրող անարդար կարգերը: Ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Միցկևիչը գալիս է Կոնստանդնուպոլիս, որպեսզի լեհ հայրենասերներին կազմակերպի ցարիզմի դեմ. սակայն հիվանդանում է և 1855 թվականի նոյեմբերի 26-ին մեռնում: Երեսունհինգ տարի հետո նրա աճյունը Փարիզից տեղափոխում են Կրակով: Ադամ Միցկևիչը գրել է շատ պոեմներ, բալլադներ ու բանաստեղծություններ: Նա ազատության և ժողովուրդների բարեկամության մեծ երգիչ էր, հիանալի հայրենասեր:

## Անվանի ճանապարհորդը

(1788—1846)

Օտտոն Եվստաֆիևիչ Կոցեբուն ռուս անվանի ճանապարհորդ էր: Նա աշխարհագրության պատմության մեջ մտել է շուրջերկրյա իր երեք ճանապարհորդություններով: Առաջին անգամ Կոցեբուն շուրջերկրյա ճանապարհորդության է դուրս եկել 1803 թվականին:

Դեռևս թարմ էին առաջին ճանապարհորդության տպավորությունները, որ նա 1815 թվականին «Ռյուրիկ» երկկայմանավով դուրս եկավ երկրորդ շուրջերկրյա ճանապարհորդության: Այս արշավախմբի նպատակն էր հայտնագործել հյուսիսային ծովային ճանապարհը: Նրանք Բերինգյան նեղուցով պետք է դուրս գային Եվրոպա՝ շրջանցելով Ամերիկան: Արշավախմբի մասնակիցները չհասան իրենց նպատակին, բայց նավագնացության ընթացքում հայտնագործեցին մոտ 400 մանր կղզիներ Խաղաղ օվկիանոսում և Ալյասկայի ափերին մի ծովածոց, որը ռուս ճանապարհորդի պատվին կոչվեց Կոցեբու: Բացի դրանից քարտեզի վրա առաջին անգամ նշվեցին Դիոմիդա կղզիները:

Երրորդ ճանապարհորդությունը նա կատարեց 1823—26 թվականներին:

# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ



Երևանի Կարամելի գործարանի կոնֆետի փաթաթման բաժնում:



Հացահատիկի առատ բերք:



Երևանի կոշիկի երրորդ գործարանի մանկական կոշիկի ցեխը:

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

# ՊԻՈՆԵՐՆԵՐ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐ

«Պիոները» գրական-գեղարվեստական պատկերազարդ մանկական ամսագիր է: Նա նպատակ ունի պիոներներին և դպրոցականներին դաստիարակելու հայրենասիրության, աշխատասիրության, Կոմունիստական պարտիայի մեծ գործին նվիրված լինելու ոգով: Պատկերել պիոներական կյանքը իր բոլոր կողմերով, ցույց տալ սովետական երեխաներին ուսման, աշխատանքի, հանգստի ժամանակ. նկարագրել նրանց վարքը դպրոցում, տանը, փողոցում և հասարակական այլ վայրերում: Այս է ամսագրի խնդիրը: Գեղարվեստական գրվածքների, ակնարկների, գիտական և այլ զրույցների, գրքերի մասին գրած տեղեկությունների միջոցով ամսագիրն աշխատում է երեխաների սրտերում բորբոքել ձգտումը դեպի գիտության բարձունքները՝ մեծ Հայրենիքի արժանավոր քաղաքացիներ դառնալու համար: Պատանի թղթակիցների նամակների միջոցով «Պիոներն» աշխատում է իր ընթերցողներին ծանոթացնել պիոներական առօրյայի հետ:

Ամսագիրը ավագ ջոկատավարների, ջոկատավարների և պիոներական ակտիվիստների համար մի ձեռնարկ է, աշխատանքն ավելի բովանդակալից ու հետաքրքիր դարձնելու գործում: Նա տարրական և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների դաստիարակների օգնականներից մեկն է:

Ավելի ակտիվ ընթերցող, իսկ հետագայում թղթակից լինելու, ամսագիրն անխափան ստանալու և ամբողջ տարվա կոմպլեկտը լրիվ ունենալու համար անհրաժեշտ է «Պիոներին» բաժանորդագրվել մեկ տարով, կամ տարվա ընթացքում կանոնավոր կերպով վերականգնել բաժանորդագրությունը:

Մի ամսից ավելի է, ինչ սկսված է ամսագրի բաժանորդագրությունը. բայց հիմա էլ ուշ չէ: «Պիոներ» ամսագրի 1954 թվականի բաժանորդագրությունը շարունակվելու է մինչև 1953 թվականի դեկտեմբերի 15-ը:

Բաժանորդագրվել կարելի է Սոյուզպեչատի բոլոր բաժանմունքներում, կապի գրասենյակներում և գործակալություններում, գործարաններում, ֆաբրիկաներում, դպրոցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում մամուլի հասարակական լիազորների միջոցով:

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ.

| | |
|---|---|
| **12 ամիսը** . . . . | **24 ռուբլի.** |
| **9 ամիսը** . . . | **18 ռուբլի.** |
| **6 ամիսը** . . . . | **12 ռուբլի.** |
| **3 ամիսը** . . . | **6 ռուբլի.** |

Երկար ժամանակով բաժանորդագրվելն ապահովում է ամսագրի լրիվ կոմպլեկտի ստացումը:

**ՇՏԱՊԵՑԵ՛Ք ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ:**
**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք ՄԵԿ ՏԱՐՈՎ:**

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք, ԿԱՐԴԱՑԵ՛Ք, ՏԱՐԱԾԵՑԵ՛Ք ԱՄՍԱԳԻՐԸ:**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**